# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 12•87



Հանձնված է արտադրության 01.10.87 թ.: Ստորագրված է տպագրության 26.11.87 թ.: ՎՖ 09543: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66532: Պատվեր՝ 1969: Գինը՝ 15 կոպ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 01.10.87 г. Подписано к печати 26.11.87 г. Формат 70×100 1/16. ВФ 09543. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 66532. Заказ 1969. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Լուսանկարը՝ ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՆՅԱՆԻ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԵԼՔՈՆՅԱՆ

# Մարդիկ, ինչո՞ւ եք սպանում իրար

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՋՕՂԼՅԱՆԻ

Հունիս ամիսն է: Տարեվերջյան քննություններս հանձնել եմ. հայոցից՝ «գերազանց», ռուսացից՝ «գերազանց», ֆրանսերենից՝ «գերազանց»... Երկրաչափություն ու հանրահաշիվ չեմ սիրում, լավ չեմ սովորում, բայց Արագած Գրիգորյանին երևի ասած են եղել, որ ես դասարանի միակ բացարձակ գերազանցիկն եմ, ինքն էլ, դե, զիջումով էր, ինչով էր, ինձ «գերազանց» նշանակեց, ասաց՝ գնա, «հինգ» եմ նշանակում: Եվ երկրաչափությունս ու հանրահաշիվս էլ, ահա «գերազանց», այլևս ոչ մի քննություն, քննություն չկա, քննություններ չունեմ: Վեցերորդ դասարանից փոխադրվում եմ յոթերորդ դասարան գերազանց գնահատականներով, միայն գերազանց գնահատականներով, ինքս էլ պատերազմում զոհվածի տղա... Մեր դասղեկ Մարգարիտ Խաչատրյանը,— մեր թաղեցիները նրան ասում էին՝ ղուլիջանցոց հարս,— ինչպես անցած և նախանցած ուսումնական տարիների տարեվերջյան ծնողական ժողովներին, այս տարեվերջյան ծնողժողովին ևս,

միանգամայն պարզ ու հասկանալի է, հատուկ շեշտելու է, գիտեմ, որ ես բոլոր առարկաներից «հինգ» եմ, վարքս էլ՝ օրինակելի, դասարանի միակ բացարձակ գերազանցիկն եմ՝ ինքս էլ լինելով զոհվածի տղա:

Մի քանի օր հետո դպրոցի դիրեկտորի և բոլոր ուսուցիչների ու ուսուցչուհիների ներկայությամբ, քաղաքային ժողկրթբաժնից անպայման մեկը կլինի, մի հոգի էլ թերթից, մի երկուսն էլ եսիմ որտեղից... նրանց բոլորի ներկայությամբ մեր դասղեկ Մարգարիտ Խաչատրյանն իր խոսքի մեջ շեշտված նշելու է, որ այս ուստարում դասարանի թվով քսանութ աշակերտից մեկը բացարձակ գերազանցիկ է, բոլոր առարկաներից՝ «հինգ»: Ես եմ: Եվ այդ բացարձակ գերազանցիկը պատերազմում զոհվածի որդի է: Ես եմ: Մանկավարժական խորհրդի նիստում հարմար չէ, ինչպես ծնողժողովում, ասել՝ պատերազմում զոհվածի տղա, մի փոքր ավելի նպատակահարմար է այսպես ասած պաշտոնական ոճով արտահայտվել. «... Ինքն էլ լինելով պատերազմում զոհվածի որդի»:

«Պատերազմում զոհվածի տղա՞»:

«Պատերազմում զոհվածի որդի»:

Երեխա ժամանակ գարնան գլխից մինչև երբ աշնան սառը եղյամը բռնում էր մեր թաղի հողուքարը, բոբիկ էինք, մեր թաղի փողոցներում ժանգոտած ծուռումուռ մեխեր ու ջարդուփշուր ապակիների կտորտանքներ՝ ինչքան ուզես: Հա՛ ժանգոտած մեխեր էին մտնում մեր ոտքերը,— իմ ոտքերը ինչքան են մտել,— հա՛ ապակու կտորները ճղում էին մեր ոտների կոշտացած ներբանները: Ոտդ մտած մեխը նստում, հանում ես, շըպըրտում ես մի կողմ, հետո թքում ես պտղունց բռնած մատների ծայրերին, քսում մեխի բացած խոցին, ապակու կըտորի քերծած-ճղածին, ու վերջ: Կարող է պատահել մի ժամ-երկու ժամ մրմուռով ցավի, կարող է լինել նույնիսկ՝ որ մի երկու օր ցավ քաշես ու կաղալով քայլես: Շատ չէ, երկու օր: Երկու օրն անցնում է, վրա երրորդ օրը ոտքդ խոցած մեխն էլ ես մոռանում, փողոցներում ցրված ապակու կտորն էլ: Բայց խոսքեր կան,— «պատերազմում զոհվածի տղա», «պատերազմում զոհվածի որդի»— որոնք խոցում են և քերծում ու ճղում են, ախ, ինչպես են խոցում և ինչպես են արյունլվիկ քերծում, ճղում... Քերծում են ոչ թե քո,— դու երեխա տղա,— բոբիկ ոտքերն ու ապիներից հաստացած կոշտացած ներբանները, այլ ուրիշ տեղերդ նաև, ամբողջ մարմինդ, ներսդ ու դուրսդ, դուրս ու ներսդ: Եվ մարմնիցդ դուրս՝ այն, որ մարդիկ ասում են՝ հոգի, իմաստունների բերանների մեջ խմորվում է՝ հոգի, գրքերում հոլովվում է՝ հոգի,— այդ հոգի ասածն են խոցում, հոգիդ: Հոգիդ են խոցում: Եվ երանի թե ծուռումուռ, ժանգոտ մեխեր լինեին, որ չար-սատանայական ատամների նման ցրված էին պատերազմից առաջ՝ 39 թվականին հիմնված և պատերազմով կիսատ ու անտերանտիրական մնացած մեր թաղի փողոցներում, տների դռների առաջները, բոստանների մարգերում և առուների մեջ: Երանի թե ջարդուփշուր, արնախում ապակիներ լինեին, որ փողոցների, բակերի հողուցեխի մեջ թաքնված՝ անհայր որբերի բոբիկ ոտքերի էին սպասում, որ արյուն հանեին: Ո՛չ չար-սատանայական ատամների նման ծուռումուռ, ժանգոտ մեխեր, ոչ էլ ջարդուփշուրված արնախում ապակիներ, այլ ընդամենը մարդկային լեզվից պոկված և շրթունքներից հնչող բառեր. «պատերազմում զոհվածի տղա», «պատերազմում զոհվածի որդի», և սրանք ոլործուն փշալարերի նման պատերազմից հետո՝ այն տարիներից կըծիկվում էին, կծիկվում էին, կծիկվում էին իմ շուրջբոլորը՝ աջից ձախ, վարից վեր, և ես՝ այդ փշոտ փշալարի կծիկի մեջ կոլոլված-ճմրթված մի թղթի կտոր... Ես ու իմ հոգին: Դե, արի, սպասիր, ինչքա՞ն սպասեի, որ այդ ոլործուն փշալարերի կծիկը քանդվեր, ժամանակը քանդեր, մոռացումը քանդեր, սառույցով սառեցրած կարոտդ քանդեր... Կծիկը ետ կծկվեր, և ես ու իմ հոգին դուրս գայինք, ինչպես քանդված կծիկի միջից արևերես է ելնում կոլոլած, ճմրթած թղթի այն կտորը, որ ճակատագրով քանի որ կծիկի միջում է, ուրեմն նորից պիտի թելի մեջ անեն, կծիկ անեն:

Հինգերորդից վեցերորդ փոխադրվելուց՝ անցյալ տարվա այս օրերին էր, և, ինչպես այսօր՝ հիմա, նստած մեր դռան բարձր շեմին, երկու ձեռքերով ծնկներս գրկած, գլուխս կախ, տխրությամբ պաղած աչքերս շեմի տնամաշ քարերին, մորիցս էր անցել այս դիրքն առնել ու այսպես երկար ու անշարժ շեմը բռնել նստել, սպասում էի՝ տարեվերջյան ծնողական ժողովից մայրս գար, փոխադրըվելու վկայականս բերեր:

Մորս ժողով գնալուց ինչքան ժամա-



նակ էր անցել, ինչքան չէր անցել՝ Նինջ ու արթնության մեջ չէի իմացել, մեկ էլ հանկարծ կողքի պատի ետևից թմրածծանրացած ականջներիս ոտքերի քլտքլտոցներ հասան: «Մայրս է,— ասի ինձնիհնձ,—եկավ»: Մորս չստերի ձայնն էր, ես գիտեի: Վերջին տարիներին իմ աչքի առաջ մորս քայլվածքը ուրիշ էր դարձել. ոտ փոխելիս ներբանները հողից չէր կտրում, քարշ էր տալիս՝ հատկապես երբ տան ու գործի տեղի չստերն էր հագած լինում: Առհասարակ ինչպե՞ս է լինում, որ մարդու քայլվածքը փոխվում է: Ինչո՞ւ է փոխվում: Ինչպե՞ս եղավ, որ մորս քայլվածքը փոխվեց,— հիշում եմ՝ ինչպես էր քայլում մայրս հորս կողքից, մի կես քայլ հորիցս ետ ընկած, հագին բարձրակրունկ կոշիկներ, որոնցից ներկի թե ինչի անուշ բուրմունքներ էի առնում... Ես այդ ժամանակները երեք-չորս տարեկան լինեի-չլինեի, մորս փեշից բռնած որ քայլում էի՝ կոշիկների հոտը քթիս էր առնում: Ինչ գույնի կոշիկներ էին,— հիշեմ, հիշեմ... Կարմի՞ր էին՝ կարմիր չէին, դեղի՞ն էին՝ դեղին չէին, սպիտակ էլ չէին, ոչ էլ կանաչ... Գույնը

մոռացել եմ, մորս կոշիկների գույնը չեմ հիշում, այն ժամանակվա կոշիկների, այն ժամանակվա կոշիկների… Հայրս մեկ-երկու քայլ մորիցս առաջ-առաջ էր գըն-նում, եւ՝ մորս փեշին կպած, մորս կո-շիկների ներկի ու օծանելիքի բուրմունքն ու հոտը ամբողջ ճանապարհին քթիս մեջ էին,— հիմա հիշում եմ: Իսկ գո՞ւյնը, ի՞նչ գույնի էին մորս այն ժամանակվա կոշիկները,— գույնը չեմ հիշում: Գուցե այն ժամանակ չեմ էլ նայել՝ ինչ գույնի են մորս կոշիկները, այն ժամանակվա կոշիկները:

Մորս այն ժամանակվա կոշիկները վա-ղուց մաշված, դեն նետված… Որտե՞ղ են տեսնես, հողի տա՞կ են, հողի վրա՞, մո-խի՞ր են դարձել քաղաքային աղբանո-ցում, բզիկ-բզիկ եղած կտորտանքները հողուցեխերի մեջ, քամիների բերանն ըն-կած՝ քշվում են տեղից տեղ… Ո՞վ գիտե, աստված գիտե՝ որտե՞ղ են մորս այն ժա-մանակվա կոշիկները: Կոշիկները՝ կո-շիկներ, բայց հարցնեմ, ով ամենակարող և ամենատես աստված, որտե՞ղ է այն ժամանակը, ո՞ւր անհետացավ մորս այն ժամանակվա քայլվածքը, ի՞նչ եղան այն օրերը, երբ արևոտ կիրակի օրերին եւ՝ երեք-չորս տարեկան, մայրս՝ չգիտեմ քանի տարեկան, և հայրս՝ չգիտեմ քա-նի տարեկան,— մեր հեռու ու Լենինա-կան քաղաքից կտրված թաղից գնում էինք քաղաք, գնում էինք՝ հայրս մորիցս առաջ-առաջ ընկած, եւ՝ մորս փեշը բըռ-նած, ու մորս կոշիկների բուրմունքը քը-թիս էր առնում: Ո՞ւր է, հարցնեմ, ամե-նատես և ամենակարող, ո՞ւր է մորս կո-շիկների բուրմունքը: Ես հարցնեմ, դու մի պատասխանիր: Իմը թող հարցնելը լինի, քոնը՝ թող չպատասխանելը: Բայց ես արդեն տասներկու տարեկանս լրա-ցած, տասներեքի մեջ, հինգերորդից փո-խադրված վեցերորդ դասարան, ես գի-տեմ, ամեն ինչ գիտեմ, հարցնելն ավե-լորդ է, պատասխանելն՝ ավելորդ ու ա-վելորդ:

Վիշտը մի մատ երեխային դարձնում է հասուն: Ինչպես որդը կերած խնձորն է շուտ հասնում, այնպես էլ վիրավորված երեխան: Վիշտն ում հոգուն նստում է, խառնում է նրա տարիքը, և կարող է այնպես լինել, որ տասներկուսը լրացրած տասներեք տարեկանը, որ ահա ես եմ, կյանքի ծանր բեռի տակ հառաչի, ինչ-պես տարիքն առած հասուն տղամարդը:

Մայրս, 1943 թվականից որբ և այրիա-ցած մայրս, հարցնում էր.

«Ինչո՞ւ են մարդիկ սպանում իրար»:

Մարդիկ, ինչո՞ւ եք սպանում իրար:

Չէ՞ որ բոլոր մարդկանց արևը մեկ է, բոլորի գլխավերևում նույն երկինքն է, նույն գիշերներն են փակվում նրանց վրա, նույն ցերեկները՝ բացվում: Եվ ծնվելիս նույն ձևով ճիչ են արձակում դահիճ դարձող դահճի ճուտն էլ, զոհի որդին էլ, որ մի ժամանակ հետո դարձյալ զոհ է դառնալու: Եվ նրանց երկուսի՝ դահճի ու զոհի ծնունդին մայրերը նույն ցավն են քաշում: Այդպես է: Որ այդպես է, հապա ինչո՞ւ են մարդիկ իրար ուտում,— հարց-նում էր 1943 թվականին հորս կախաղան հանողներին ատամնի ամեն օրը անիծող մայրս,— ինչո՞ւ են մեկը մյուսի համար մահ դառնում, թույն դառնում, թուր դառ-նում… Աշխարհը մեծ է, արդեն, էլի… Մայրս հառաչում էր, խոսքով ընկած՝ չէր նկատել, որ վառարանի կրակը նըս-տել է, ելնում, ածուխ էր գցում նստած կրակին և կեռիկ ակիշով ածխամոխիրը հեռացնում էր, որ վառարանի մեջ օդ խաղա և կրակը նորից բորբոքվի: Դուրսը ցուրտ էր, խիստ ձմեռ, քառասունհինգ թվականի ձմեռը: Ածուխը լավ վառվող ածուխներից չէր, Ջաջուռի ածուխ էր: Վառարանը շատ փոքր էր, դիտավորյալ փոքր վառարան էինք առել, որ ածուխ քիչ ծախսվեր, ածուխը բավականացներ մինչև գարնան գլուխ:

Մայրս մրսում էր:

Ես մրսում էի:

Վիկտորյա և Քնարիկ քույրերս մըր-սում էին:

Բոլորս վառարանին կպած էինք նըս-տում, որ ինչքան հնարավոր էր՝ լավ տաքանայինք: Հանկարծ չլիներ վառա-րանից ալիք տվող տաքությունը հենց այնպես իզուր գնար-կորչեր: Կպած նըս-տած էինք՝ բավական չէր, աչքներս վա-ռարանից չէինք կտրում,— ինձ թվում էր՝ աչքս վառարանից կտրեմ՝ չեմ տաքա-նա, կմրսեմ:

Վառարանի ակի առաջ կիտված ա-ծուխի կիսավառ մոխիրը ակիշով խառ-նելով, մայրս ասում էր. «Երանի մար-դիկ հողի վրա էնպես հաշտ ու խաղաղ լինեին, ինչպես հողի տակ: Ինչ է, մար-դիկ պիտի մեռնե՞ն, անպայման պիտի մեռնե՞ն, հա՞, որ նոր խելքի գա՞ն… Խա-ղաղությունն, ի՞նչ է, պիտի մեր ոսկոր-նե՞րը վայելեն: Ինչո՞ւ աշխարհն էսպի-սին է: Ինչո՞ւ աշխարհի հիմքերը, է՜, հենց սկզբից էսպես է դրված»:

ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

# Հայրենիք

Նախ կրակ էի՝
Կայծակի զարկից բռնկված կաղնի,
Որ օջախ դարձա քարանձավի մեջ:

Պահպանում էին,
Հսկում էին ինձ,
Աղոթում էին երկյուղած շուրթով,

Եվ սրբանալով
Ես դարձա ոգի, ես դարձա աստված
Ու դարձա խորհուրդ մի սքանչելի,
Ու դարձա խորհուրդ մի անքննելի,

Որ չի վերծանվում
Կրակի նման
Ու արյունի պես...
Եվ հետո դարձյալ կրակ էի ես,
Ալվան բոց էի ծաղկած դեղձենու,
Հայրենի արտի հրեղեն ծփանք
Եվ ժայռին բուսած մենավոր ծաղկի
Աստղ էի ցոլուն:

Երբ ցանկացել են ինձ բռնապետել,
Դարձել եմ արյան շանթ ու բռնկում,
Կայծակ եմ դարձել ահեղ երդումի...

Իսկ երբ հատել են,
Երբ կիսել են ինձ,
Կիսված սրտի պես հանել ծուխ ու բոց
Ու միացել եմ հրեղեն վերքով:

Կրակ էի պարզ
Ու կրակ դարձա ես հավերժական...



# Աշնանային ծիրանին

Երեկ ուրիշ, ախ, ուրիշ, երեկ ոսկի էր նա զուտ,
Նայում էիր հրաշքին, ու կարկամում էր լեզուդ:

Նա քարափին էր կանգնած, կանգնած հզոր ու վայրի
Ու թվում էր՝ իր բոցով ամբողջ երկինքը կայրի:

Այսօր ողջը՝ փշրված, այսօր ողջը՝ ոտքի տակ,
Տերևներն են մահանում իբրև ոսկե նահատակ:

Գիշերն ամբողջ երկնի ցուրտ քամիները շաչել,
Մերկացրել են նրան ու երկնքին են խաչել:

Մեն մի տերև է հիմա մերթ սոսափում, մերթ լռում
Ու մենավոր մոմի պես ծառի կրծքին թրթռում...

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



ԳՐԻԳՈՐԻ ՎԻԵՐՈՒ
(Մոլդավիա)

# Մայրենի լեզու

Իմ մանկուց լսած անուշ ձայներին
Ականջ եմ դնում կրկին ու կրկին.
Ինչ լա՜վ է մորը անվանել են մայր,
Հացին՝ հաց, երկինք՝ երկնքին անծայր:

Հայրենական խոսք, հնչիր դարեդար,
Ես սրտով գիտեմ այս լեզուն արդար,
Այս լեզվով է, որ մեր հին երգերում
Իմ նախնիների ձայներն են ապրում:

Քեզնով ամեն ինչ լավն է, գեղեցիկ;
Լուսաբաց ասում ենք՝ լուսաբացին,
Ու արևին էլ ասում ենք արև,
Թռչունին՝ թռչուն. լա՜վ է արդարև:

Դարերի միջից ինձ հետ ես խոսում,
Ես սրտով գիտեմ այս անուշ լեզուն,
Այս լեզվով է, որ մեր հին երգերում
Իմ նախնիների ձայներն են ապրում:

Թարգմանեց Մ. ՈՍԿԱՆՅԱՆԸ

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



— Նստեցեք, երիտասարդ,— ասաց Պաշտոնյան:

— Շնորհակալ եմ:

Երիտասարդը նստեց:

— Ինձ տեղեկություններ են հասել ձեր մասին,— ասաց Պաշտոնյան սիրալիր,— օ, ոչ շատ բան. ձեր նյարդայնությունը... Որ դուք այնքան էլ չեք հարմարվում: Արդեն մի քանի ամիս է, ինչ լսել եմ ձեր մասին և որոշեցի կանչել ինձ մոտ: Մըտածեցի՝ միգուցե կուզեք աշխատանքը փոխել, ասենք՝ ծովի այն կողմն անցնել, ռազմական ուրիշ ասպարեզում աշխատել: Միգուցե ձեզ վերագտնեիք հին կռվի մեջ. գրասենյակային գործը սպանում է:

— Ես այդպես չեմ մտածում,— ասաց երիտասարդ սերժանտը:

— Այդ դեպքում ի՞նչ եք ուզում:

Սերժանտը ուսերը թոթվեց և նայեց իր ձեռքերին:

— Ապրել խաղաղության մեջ, իմանալ, որ մեկ գիշերվա ընթացքում աշխարհիս զենքերը ժանգոտել են, որ բակտերիոլոգիական ռումբերը չեզոքացվել են, որ տանկերը նախապատմական հրեշների պես սուզվել են ճանապարհների մեջ՝ հանկարծակի գոյացնելով ձյութի փոսեր: Ահա թե ինչ կուզեի:

— Դա մենք բոլորս կուզեինք, իհարկե,— ասաց Պաշտոնյան:— Այժմ վերջ տվեք ձեր ողջ այդ իդեալիստական շաղակրատանքին ու ասացեք ինձ, թե ուր կցանկանայիք փոխադրվել: Կարող եք ընտրել. Արևմտյա՞ն, թե՞ Հյուսիսային Ռազմագոտի:

Պաշտոնակալը մի վարդագույն քարտեզ գցեց սեղանին: Բայց սերժանտը զբաղված էր իր ձեռքերով, շուռումուռ էր տալիս, նայում էր մատներին.

— Ի՞նչ կանեիք դուք՝ սպաներդ, ի՞նչ կանեինք մենք՝ մարդիկս, ի՞նչ կաներ աշխարհը, եթե ամենքս վաղն արթնանայինք ու բոլոր զենքերը փոշիացած գտնեինք:

Պաշտոնյան զգաց, որ սերժանտի հետ ավելի զգույշ պետք է վարվել: Նա հանդարտ ժպտաց.

— Հետաքրքիր հարց է: Ես սիրում եմ զրուցել նման գաղափարների շուրջ, և իմ պատասխանը հետևյալն է. մասսայական խուճապ կսկսվի: Ամեն մի ազգություն կկարծի, թե միայն ինքն է անզեն և այդ աղետի համար կմեղադրի իր թշնամիներին: Ինքնասպանությունների ալիք, բնաջնջումներ, միլիոնավոր ողբեր-

**ՌԵՅ ԲՐԵԴԲԵՐԻ**
(ամերիկացի գրող)




Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

գություններ կլինեն:

— Բայց դրանից հետո,— ասաց սերժանտը,— երբ նրանք տեսնեն, որ, իրոք, բոլոր ազգերն էլ զինաթափված են և այլևս վախենալու ոչինչ չկա, որ ամենքս մաքուր հոգով կարող ենք նոր, աննախընթաց կյանք սկսել, ի՞նչ կլինի այդ դեպքում:

— Նրանք շատ արագ կվերազինվեն:

— Իսկ եթե նրանց կանգնեցնե՞ն:

— Եթե բանը դրան հասնի, նրանք իրար կսկսեն բռունցքներով ծեծել: Մարդկանց հսկա բանակներ՝ մեխավոր ձեռնոցներով զինված, կհավաքվեն սահմանների մոտ, և եթե դուք նրանցից խլեք ձեռնոցները, նրանք գործի կդնեն եղունգներն ու ոտքերը, եթե կտրեք նրանց ոտքերը, կսկսեն միմյանց վրա թքել, եթե կտրեք նրանց լեզուներն ու բերանները փակեք խցաններով՝ մթնոլորտը կլցնեն այնպիսի ատելությամբ, որ միջատները գետնին կթափվեն, իսկ թռչուններն անշնչացած կընկնեն հեռագրալարերից:

— Անշուշտ դուք չեք կարծում, թե դրանից լավ բան դուրս կգա,— ասաց սերժանտը:

— Իհարկե ոչ: Դա հիշեցնում է կրիայի զրահը պոկելուն: Քաղաքակրթությունը շնչահեղձ կլինի և կմեռնի նման ցնցումից:

Երիտասարդը գլուխն օրորեց.

— Թե՞ դուք խաբում եք ձեզ ու ինձ, որովհետև լավ և հարմարավետ աշխատանք ունեք:

— Անվանենք դա իննսուն տոկոսով ցինիզմ և տասը տոկոսով իրավիճակի ռացիոնալացում: Թողեք ձեր ժանգը և մոռացեք դրա մասին:

Սերժանտը թափով գլուխը բարձրացրեց:

— Ի՞նչ իմացաք, որ ես դա ունեմ,— ասաց նա:

— Ի՞նչ ունեք:

— Ժանգ, իհարկե:

— Ինչի՞ մասին է խոսքը:

— Ես կարող եմ այդ անել, իմացեք: Ես կարող եմ ժանգը գործի դնել հենց այս գիշեր, եթե կամենամ:

Պաշտոնյան ծիծաղեց.

— Իհարկե դուք լուրջ չեք խոսում:

— Ես միանգամայն լուրջ եմ: Ինքս էի որոշել գալ ձեզ հետ խոսելու: Ուրախ եմ, որ դուք կանչեցիք: Այդ հայտնագործության վրա ես երկար եմ աշխատել: Դա իմ երազանքն էր: Այդ արվում է ատոմների որոշ կառույցների հետ: Պարզվում է, որ ատոմների դասավորությունը պողպատե զրահում որոշակիորեն կարգավորված է: Ես հավասարակշռության խախտման գործոնն էի փնտրում: Դուք գիտեք, որ քաջատեղյակ եմ մետաղագիտությանն ու ֆիզիկային, և հանկարծ գլխի ընկա, որ ամբողջ ժամանակ ժանգի գործոնն է օդում կախված: Ջրային գոլորշին: Ես պետք է պողպատին «նյարդային ցնցում» հաղորդելու ուղին գտնեի: Այնուհետև ջրային գոլորշին պետք է տարածվեր աշխարհում ամեն տեղ. ոչ բոլոր մետաղների վրա, իհարկե: Մեր քաղաքակրթությունը պողպատի վրա է կառուցված: Ես չէի ցանկանա կործանել բոլոր կառույցները, միայն կոչնչացնեի հրացաններն ու արկերը, մարտական ինքնաթիռներն ու նավերը: Ես կարող եմ մեքենայով ազդել պղնձի, արույրի, նույնիսկ ալյումինի վրա, եթե անհրաժեշտ լինի: Հենց որ անցնեմ այդ բոլոր զենքերի կողքով, դրանք բոլորն էլ կդառնան ոչ պիտանի:

Պաշտոնյան թեքվել էր գրասեղանի վրա և հայացքը սևեռել սերժանտին:

— Կարելի՞ է ձեզ մի հարց տալ:

— Այո:

— Երբևէ ձեզ չի՞ թվացել, որ դուք Քրիստոսն եք:

— Չէի ասի, թե թվացել է: Բայց կարծում եմ, որ աստված բարի եղավ իմ նկատմամբ՝ թույլ տալով, որ փնտրածս գտնեմ, եթե դա նկատի ունեք:

Պաշտոնյան մտավ ծոցագրպանը և դուրս հանեց մի ինքնահոս, որի գլխիկը հրացանի պարկուճն էր: Նա գրիչով մի շարժում արեց ու սկսեց ինչ-որ թուղթ լրացնել:

— Ես ուզում եմ, որ սա կեսօրին տանեք բժիշկ Մաթյուսին՝ լրիվ ստուգման

համար։ Ոչ թե, որ իրոք վատ բան եմ կասկածում, հասկացեք։ Բայց արդյոք չե՞ք զգում, որ պետք է բժշկի դիմեք։

— Կարծում եք ստո՞ւմ եմ, որ նման մեքենա եմ հնարել,— ասաց սերժանտը,— բնավ ոչ։ Դա այնքան փոքր է, որ կտեղավորվի ծխախոտատուփում։ Նրա ազդեցությունը հասնում է շուրջ հինգ հարյուր մղոնի։ Ես կարող եմ մի քանի օրում անցնել այս երկիրը, մեքենայով պողպատի որոշակի տեսակների վրա ազդելով։ Մյուս ազգերը մեր նկատմամբ առավելություն չեն ունենա, որովհետև հենց որ նրանք մոտենան մեզ, նրանց զենքերը կժանգոտեն։ Հետո կթռչեմ Եվրոպա, և արդեն հաջորդ ամսին իսկ, աշխարհը մեկընդմիշտ կազատվի պատերազմներից։ Ինքս էլ չգիտեմ՝ ինչպես հասա այդ հայտնագործությանը։ Դա անհնար էր, այնքան անհնար, որքան ատոմային ռումբի հայտնագործումը։ Մի ամիս սպասեցի՝ խորհելով դրա շուրջը։ Ես մտածում էի, թե ի՞նչ կլինի, իրոք, երբ «պոկենք զրահը», ինչպես դուք եք ասում։ Բայց հենց նոր գլխի ընկա, մեր զրույցը օգնեց ավելի պարզ տեսնել իրերի դրությունը։ Ոչ ոք չէր կարծում, թե օդանավեր կթռչեն, ոչ ոք չէր կարծում, թե ատոմը կճեղքվի։ Ոչ ոք չի հավատում, թե երբևէ խաղաղություն կլինի, բայց կլինի։

— Կտանեք, չէ՞, այդ թուղթը բժիշկ Մաթյուսին,— անհամբեր ասաց Պաշտոնյան։

Սերժանտը ոտքի կանգնեց.

— Դուք չեք պատրաստվում ինձ նոր գոտի տեղափոխել, այդպես չէ՞։

— Դեռևս ոչ։ Միտքս փոխեցի։ Թող Մաթյուսը որոշի։

— Այդ դեպքում՝ ես որոշել եմ,— ասաց երիտասարդը,— ես թողնում եմ պաշտոնս հենց այս րոպեից, ես հրաժարվում եմ։ Շատ շնորհակալ եմ ձեզնից, սըր, որ ինձ տրամադրեցիք ձեր թանկագին ժամանակը։

— Այս կողմը դարձեք, սերժանտ, ամեն ինչ այդքան լուրջ մի ընդունեք։ Դուք ստիպված չեք հրաժարվելու, ոչ ոք չի պատրաստվում ձեզ նեղացնել։

— Ճիշտ է։ Որովհետև ոչ ոք ինձ չի հավատա։ Ցտեսություն, սըր։

Սերժանտը բացեց դուռն ու դուրս գնաց։

Դուռը փակվեց, և Պաշտոնյան մենակ մնաց։ Նա մի պահ կանգնեց, նայելով դռանը, հոգոց հանեց, ձեռքերով շփեց դեմքը։ Հեռախոսը զնգաց։ Նա զանգին ցրված պատասխանեց.

— Օ, ողջույն, բժիշկ, ես էլ ձեզ էի ուզում զանգահարել,— դադար։— Այո, ես պատրաստվում էի նրան ձեզ մոտ ուղարկել։ Տեսեք՝ արդյոք նրան ինչ-որ բան չի՞ պատահել։ Ամեն ինչ կարգի՞ն է։ Եթե դուք այդպես եք գտնում, բժիշկ։ Հավանաբար հանգստի կարիք ունի, երկարատև, լավ հանգստի։ Խեղճ տղան իրոք որ հետաքրքիր մոլորության մեջ է։ Այո, այո։ Ամոթ է։ Բայց ահա թե ինչ կարող է անել տասնվեցամյա Պատերազմը մարդու հետ։

Խոսափողի մեջ զգաց պատասխանը։

Պաշտոնյան լսեց և գլխով արեց.

— Ես նշում կանեմ այդ մասին, մի վայրկյան,— նա փնտրեց իր գրիչը,— ըսպասեցեք մի րոպե։ Շարունակ իրերն իրենց տեղում չեն,— նա շոշափեց գըրպանը,— մի րոպե առաջ գրիչս այստեղ էր։ Սպասեցեք։

Նա ցած դրեց խոսափողը և սկսեց խուզարկել գրասեղանը՝ դուրս քաշելով դարակները։ Կրկին ստուգեց ծոցագրպանը, անշարժացավ։ Հետո նրա ձեռքերը դանդաղ ձգվեցին դեպի գրպանը և մանրազնին փնտրեցին։ Նա խորը մտցրեց իր բութ մատն ու միջնամատը և դուրս հանեց մի պտղունց ինչ-որ բան։ Ապա լցրեց իր սեղանին՝ թղթի վրա. դեղնակարմիր ժանգի անխառն փոշի էր։ Նա մի պահ նստեց՝ ապշած դրան նայելով։ Հետո ճանկեց խոսափողը։

— Մաթյուս,— ասաց նա,— դուրս եկեք գծից, արագ։

Լսվեց խոսափող դնելու չխկոցը, և նա մի այլ համար հավաքեց.

— Ալո, պահակակե՞տ, լսեցեք, մի մարդ է գալիս, հիմա ուր որ է կանցնի այդտեղով, դուք նրան ճանաչում եք, անունը՝ սերժանտ Հոլիս. կանգնեցրեք նրան, կրակեցեք նրա վրա, սպանեցեք, եթե անհրաժեշտ է, ոչ մի հարց մի սըրվեք, սպանեցեք շան որդուն, լսո՞ւմ եք։ Պաշտոնյան է խոսում։ Այո, սպանեցեք նրան, լսեցի՞ք։

— Բայց սըր,— գծի մյուս ծայրում ասաց շփոթված ձայնը,— ես չեմ կարող, ես ուղղակի չեմ կարող…

— Ի՞նչ է նշանակում «չեմ կարող», գրողը տանի։

— Որովհետև…,— ձայնը մարեց։ Խոսափողի մեջ մղոնաչափ հեռվից լսվում էր միայն պահակի շնչառությունը։

Պաշտոնյան լսափողը թափահարեց.



— Լսեցեք ինձ, լսեցե՛ք, պատրաստ պահեցեք հրացանը:

— Ես չեմ կարող կրակել որևէ մեկի վրա,— ասաց պահակը:

Պաշտոնյան խորն ընկավ իր բազկաթոռի մեջ: Նա մոլեգնած, շնչահեղձ լինելով մի կես րոպե նստեց:

Դրսում այդ պահին (նա կարիք չուներ նայելու, կարիք չկար, որ որևէ մեկը նրան ասեր) օդանավարանները կարմիր, փափուկ ժանգի փոշի դարձած, թափվում էին, իսկ ինքնաթիռները, որպես դարչնագույն ժանգի քամի, քշվում էին հեռու, ոչնչանում: Տանկերը սուզվում էին, դանդաղ սուզվում տաք ասֆալտե ճանապարհների մեջ, ինչպես դինոզավրեր (մի՞թե այդ չէր ասում մարդը), սուզվում էին ձյութի փոսերի մեջ: Բեռնատարները ցրիվ էին գալիս որպես ծխի օքրայագույն շունչ, նրանց վարորդները ընկնում էին ճանապարհին, և միայն անվադողերն էին շարունակ գլորվում մայրուղիներով:

— Սըր…,— ասաց պահակը, որը հեռվից տեսնում էր այս բոլորը,—օ՜, աստված…

— Լսեցեք, լսեցեք,— բղավեց Պաշտոնյան,— գնացեք նրա ետևից, գտեք նրան, ձեր ձեռքերով խեղդեցեք, բռունցքներով, ոտքերով խփեք նրան, ջարդեք նրա կողերը, ծեծեք, մինչև մեռնի, արեք ամեն ինչ, միայն թե գտեք այդ մարդուն: Ես հենց հիմա գալիս եմ:

Նա դրեց խոսափողը: Ինչ-որ բնազդային կտրուկ շարժումով դուրս քաշեց գրասեղանի խորքի դարակը՝ հանելու իր ատրճանակը: Կաշվե նոր պատյանը դարչնագույն ժանգակույտով էր լցված: Նա հայհոյեց և ոստնեց:

Բաժանմունքից դուրս գալու ճանապարհին նա մի աթոռ ճանկեց: «Սա հո՞ փայտ է»,— մտածեց նա,— «հիանալի հնառճ փայտ, հիանալի հնառճ թխկի»: Երկու անգամ թափով աթոռը նետեց պատին ու ջարդեց: Ապա բարձրացրեց ոտքերից մեկը՝ ամուր սեղմելով բռունցքում: Նրա դեմքը կարմրատակած էր, բերանը լայն բացված, ռունգերը փնչացնում էր: Նա ափով խփեց աթոռի ոտքին՝ ամրությունը փորձելու համար:

— Շատ լավ, գրողը տանի, հառաջ,— գոռաց նա:

Եվ աղաղակելով նետվեց դուրս՝ շըրըխկացնելով դուռը:

Անգլերենից թարգմանեց

ՆԱՐԻՆԵ ՀՈՎԱԿԻՄՅԱՆԸ

ՍԱՄՈՒԻԼ ՄԱՐՇԱԿ

# Մեխերի մասին

Ջանալով մարդկանց վարժեցնել կարգ-կանոնին,
Զբոսայգու դիրեկտորը մեխեր չխնայեց.
Կաղնու հզոր բնին
Տասներկուդյույմանոց մի մեխ բևեռեց,
Իսկ ճանապարհներում ծեր՝
Շարեց քսան հատ մեծ-մեծ մեխեր,
Որ կախ տա այսպիսի հայտարարություններ.
«Պահպանեցեք ծառերը:
Նրանք բարեկամներն են ձեր»:
«Ծաղիկները չպոկել»: «Արգելվում է ծխել»:
«Ծաղկաթմբերը չտրորել»:
«Թքել չի կարելի»: «Սիրելի երեխաներ,
Մի կոտրատեք ծառերի ճյուղերը»...
Բոլոր բներին, ուր էլ աչք ածես,
Խնամքով կախված են տախտակներ պես-պես:
Նայեք շագանակենում կամ ճանապարհներում,
Տառերը գրված են արվեստով ու սիրուն.
«Դեպի ձախ—ցնցուղն է»: «Դեպի աջ՝ ակումբ ու տիր»:
Թե կարենար հայտնել մտքերը իր
Հարյուրամյա կաղնին, մակագրությամբ՝ «Մանկական սեկտոր»,
Կասեր. «Սիրելիդ իմ դիրեկտոր,
Երբեմն բարեկամները վատ են թշնամիներից:
Պաշտպանիր, խնդրում եմ, ինձ քեզանից»:

Թարգմանեց Խ. ՀՐԱՉՅԱՆԸ

Նկարը՝ ՄԱՐԻՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

ՎՐԵԺ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ

# Յոթերորդ «բ»-ի անձնանունների բառարան

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ՀԵՂԻՆԱԿԻ ԿՈՂՄԻՑ.— Քսան տարին ինչ-որ բան մոռանալու համար բավական է, բայց հիշելու համար՝ քիչ: Ուստի՝ թող ինձ ներեն ընթերցողները, եթե իմ ուսումնասիրության մեջ անորոշություն և չպատճառաբանված շեղումներ նկատեն: Ես այս բառարանը կազմեցի՝ ուղեցույց ունենալով զուտ հիշողությունս: Որոշ բաներ մոռացության եմ տվել միտումնավոր, չուզենալով անախորժ ստվեր գցել մեր կյանքի այն երանելի հատվածի վրա, որը մենք ստեղծեցինք հարյուր տարվա համար: Ստեղծեցինք, որ պատմենք մեկմեկու, երբ ծեր կլինենք, երբ մենակ կլինենք ու հուսահատ, երբ ուժեղ կլինենք կամ էլ թույլ:

Անցել է քսան տարի այն օրից, երբ ես գիշերօթիկ դպրոցի յոթերորդ «բ» դասարանի «տիրացուն» էի: Յոթերորդ «բ»-ն դասարան էր, որն ուզածդ կամ չուզածդ պահին ապրում էր յոթերորդ երկնքում: Մենք քսանհինգ հոգի էինք, և բոլորս միասին կոչվում էինք՝ «յոթերորդ «բ»: Առանձին-առանձին մենք խռոված ու անուրախ մեծացած երեխեք էինք: Բոլորս միասին՝ յոթերորդ «բ» էինք, իբր ծնողների կարիքը չունեցող, իբր՝ անուրախ բաների հերը վաղուց անիծած, իբր՝ երես առած: Մեզ խղճում էին, իսկ մենք ծիծաղում էինք նրանց երեսին:

Մենք յոթերորդ «բ» էինք ի հեճուկս մեր չունեցած կամ էլ մեզնից հեռու իրենց երջանկությունը վայելող ծնողների, շուկաներում առատորեն լցված մրգերի, մեր կողքով երջանկորեն սլացող «շկոլնիկ» և «գոնոչնի» հեծանիվների, մեր դյուրափոփոխ ազգանունների: Հասարակությունից և մարդկանցից յոթերորդ «բ»-ն ոչինչ չէր պահանջում՝ ինքն էր իրեն գուրգուրում, եթե դրա կարիքը զգում էր:

Դասարանները, ինչպես և մարդիկ, փոխվում են: Վանոն դառնում է Վահան Միխայլովիչ, իսկ հինգերորդ «ա»-ն՝ տասներորդ «ա»: Յոթերորդ «բ»-ն դուրս է օրինաչափություններից: Նա մնաց այնպիսին, ինչպիսին կար՝ յոթերորդ «բ»: Ավարտեցինք դպրոցը, բայց մեզ կոչում էին՝ յոթերորդ «բ»: Դա մեր անունն էր, մեր ոգին, մեր գոյության կերպը, մեր ըմբոստությունը, մեր հիշողությունը, որը այսօր էլ շրջում է մեզ հետ: Կյանքի խայտաբղետ ակնթարթներին նա օգնում է մեզ չհուսահատվելու և հավատալու, որ ամեն ինչից դուրս կա նաև յոթերորդ երկինք, ուր ապրելու համար համարձակություն պետք է ունենանք դեն նետելու մեր անուն-ազգանուն-հայրանունների փաղաքշական ու մեծարողական մանիկները՝ հպարտորեն կրելու յոթերորդ «բ»-ից մեզ շնորհված փառահեղ մականունները, որոնց ստուգաբանությամբ և ծագումնաբանությամբ ես թույլ տվեցի ինձ զբաղվելու:

ՏԻՐԱՑՈՒ: Ես եմ: Այդ անունը վաստակեցի հանրահաշվի դասին, երբ գերազանց գնահատականի ակնկալիքով ուսուցչուհուն նմանակելով պատասխանում էի դասը· «Համարիչը բազմապատկած հայտարարով...»:

— Ամե՛ն...—դասարանի գյուտն էր:

Ավելորդ է ասել, որ սկզբնական շրջանում ես համառորեն փորձում էի ինձնից վանել այդ մականունը: Բայց որքան ճգնում էի, այնքան այդ մականունը իմն էր դառնում: Անունների հարցում յոթերորդ «բ»–ն կատակել չէր սիրում: «Հոկտեմբերյան» տեղանունը արդեն դասարանին մոլեգին հրճվանք էր պատճառում, որովհետև դեպի Հոկտեմբերյան տանող ճանապարհը անցնում էր Էջմիածնի միջով, որտեղ կար եկեղեցի, որտեղ կար տիրացու: Իսկ տիրացուն՝ ես էի· «Համարիչը բազմապատկած հայտարարով...»:

Մի անգամ դպրոցական էքսկուրսիայի ժամանակ, Գեղարդում, ժայռաբեկորի

գագաթը մագցելիս սահեցի և ջարդեցի ոտքս: Միշտ վախեցած և միշտ տագնապահար դասատուները շրջապատել էին ինձ:

—Տիրացուն նոր վանք էր ուզում հայտնաբերել,— կատակեց տղաներից մեկը: Եվ սկսվեց...

— Ինչ ազահություն...

— Աղոթի՛ր, որդյակս, աղոթքը մեղմո՛ւմ է ցավը:

Ես ժպտացի: Երջանիկ էի, որ չեմ մեռել, և որ աշխարհում մահվան հակառակը յոթերորդ «բ»-ն է:

ԱՎԱՆԱԿ: Ամենահեղինակավոր մականուններից մեկը, որին նա արժանացավ գիտատեխնիկական հեղափոխության դեմ ունեցած իր սկզբունքային ճառի համար: Տղաները երազելով խոսում էին մեքենաների և հատկապես «Վոլգայի» մասին: Հանկարծ նա ըմբոստացավ:

— Ի՞նչ եք գտել էդ երկաթների մեջ: Ավանակը «Վոլգայից» լավն է:

— Ի՞նչ է պետք սոված գայլին՝ գետակից ջուր խմող մի ամլիկ գառ: Յոթերորդ «բ»-ն կառչեց նրա այդ մտքից: Գցեցբռնեց, վերլուծեց, ստուգաբանեց և արդյունքում նրա ազնիվ ճակատին մեխեց «ավանակ» մականունը: Նա սարեցի էր և, բնականաբար, չէր հանձնվում.

—«Վոլգան» կարո՞ղ է սարերով գնալ, ավանակը գնում է: «Վոլգայի» բենզինը որ պրծավ՝ վերջ, իսկ ավանակի բենզինը իր ոտքերի առաջ է, կարածի ու կգնա: Էլ չեմ ասում վթարի մասին»:

Որքան էլ որ տրամաբանական էին նրա փաստարկները, դասարանի որոշումը վճռական էր և ենթակա չէր փոփոխման:

ՓՈՐ-ՀՈՐ: Դասարանի ամենաակտիվ տղաներից էր: Միաժամանակ հաճախում էր տասը խմբակ՝ գրական, պատանի տեխնիկների, կիթառի, ակորդեոնի, աշխարհագրական, ֆոտոսիրողի և այլն: Մի անգամ սխալվեց և իր այդ ակտիվությունը դրսևորեց ճաշարանում: Կերավ երկու բաժին կաղամբապուր, երկու բաժին հունձացորենի շիլա, որին յոթերորդ «բ»-ն «խոզի կեր» էր պիտակել, վրայից էլ խմեց երեք բաժակ կոմպոտ: Իհարկե, նա ուտում էր այնպես, իբր՝ ոչինչ չի պատահել, բայց յոթերորդ «բ»-ի ճարպիկ տղաներից մեկը խնամքով արձանագրեց նրա կերակրացանկը: Այդ օրը դասարանը վայելեց իր զվարճալի օրերից մեկը և այնպիսի ենթատեքստերով հարուստ կոմեդիա սարքեց, որին կնախանձեին «Տժվժիկի» ընթերցողները:

— Ներսես ախպարն ի՞նչ ուտող է, անոր անունն է դուրս եկել: Ուտողը կերավ-կշտացավ:

— Ապարդյուն ճիգ. անդունդը կարո՞ղ ես լցնել:

— Սոցիալիզմի բուրժույ,— մեկն էլ այսպես բնութագրեց այդ երևույթը: Հետագայում «բուրժույ» բառը յոթերորդ «բ»-ի լեզվական օրինաչափություններին ենթարկվելով, դարձավ «պիրուժ» և որպես հոմանիշ օգտագործվում էր «փորհորի» կողքին: Հաջորդ և մյուս օրերին բոլորը ցուցադրաբար հսկում էին իրենց ափսեները, որ իբր «Փոր-հորը» չթռցներ, և դասարանի օրը ավելի գունավոր էր դառնում:

ԿԱՑԻՆ: Վայելուչ մականուն էր, որ ձեռք էր բերվել ազնիվ պայքարում, արյան գնով: Չնայած այն հանգամանքին, որ նա այդ անունը կրում էր իր մարմնի ամենապատվավոր մասում, որը հետագայում ճառագելու էր գործարանի գլխավոր ինժեների պաշտոնում, դասարանը չէր շտապում լոկ արտաքին նմանությամբ հիմնավորել իր որոշումը: Սպասում էր առիթի: Դասարանական ամենաթեժ ծեծկռտուքներից մեկի ժամանակ նա գլխի հիանալի և շեշտակի հարվածով ոչ թե ջարդեց, այլ պատռեց տղաներից մեկի ճակատը: Առիթը այնքան նպաստավոր էր, որ անմիջապես խաղաղություն կնքվեց, և յոթերորդ «բ»-ն նրստեց խորհրդակցության: «Դատական բժիշկը» զննեց վիրավորի ճակատը և եզրակացրեց, որ հարվածը կատարվել է կացինով: Եվ քանի որ այդ կացինը գլուխ էր և ոչ թե սառը զենք, դասարանը որոշեց նրան դատական պատասխանատվության չենթարկել: Նախագահող Փոր-հորը առաջարկեց բավարարվել նրա գլխին «մահացու է» նախազգուշական հայտարարությունը կպցնելով: Ընդունվեց Փոր-հորի առաջարկը և դրանով հարցը... բացվեց: Զմեռ–ցուրտ-վառելիք-փ ա յ տ-փ ա յ տ ահատ-կացին՝ յոթերորդ «բ»-ի ճկուն միտքը ոստոստում էր բառից բառ և ուզած պահին գտնում էր իրեն անհրաժեշտ խոսքը:

ԼՊԻՐԾ: Մտավորական ընտանիքում դաստիարակություն ստացած տղա էր: Ուներ կիրթ վարվելակերպ՝ մի բան, որ ինքնին դասարանին խորհելու առիթ էր տալիս: Մեր բոլոր՝ հայկական, ռուսական և համամարդկային բառարաններում



եղած հայհոյանքներին նա պատասխանում էր մեկով՝ լպի՛րշ: Հետագայում, երբ յոթերորդ «բ»-ն նրա անունը կնքել էր. «լպիրշ», նա արդեն հիանալի տիրապետում էր մեր հայհոյանքներին: Բայց անունը անուն է, նրանից չես փախչի: Տարիներ անց նրա մահվան ողբերգական լուրը ցնցեց մեզ, բայց մենք այսօր էլ նրան հիշելիս ասում ենք՝ Լպիրշը, որովհետև չենք ուզում հավատալ, որ նա չկա:

ՃԱՐՊԱԳՈՒՆԴ: Մականուն, որի ընտեղծման համար յոթերորդ «բ»-ից ջանք չպահանջվեց: Նա իր անունը մարմնաձևերի հետ բերեց դասարան: Մի տղա, որը հեշտորեն երեք յոթերորդցու կծեծեր: Բայց սկզբում նա իրեն մեծի պես էր պահում, ներողամտորեն վերաբերվելով մեր կատակներին: Հետո հերթով բոլոր յոթերորդ «բ»-ի տղաներին ծեծեց, դրանով իսկ ապացուցելով իր յոթերորդ «բ»-ին արժանի լինելը: Աշխարհագրության դասատուն սխալվեր ու ասեր՝ երկրագունդ: Դասարանը քանդվում էր, և տեղից նրան ուղղում էին՝ ճարպագունդ: Նրա բռունցքներին մենք հակադրում էինք այդ բառը, և նա մարտադաշտից հեռանում էր պարտված: Քիչ ժամանակ անց գիշերօթիկի շրջապատի տղաների դեմ մղած մարտերում նա այնքան հեղինակություն ձեռք բերեց, որ դասարանի ղեկը վերցրեց իր ձեռքը, բայց երբեք չկարողացավ իրենից պոկել «ճարպագունդը»:

ՃԱՆՃ: Դասարանի չորս աղջիկներից մեկը, որը իր արագաշարժ թարթիչները գործի էր դնում ամեն առիթով: Գերազանց էր ստանում՝ տզզում էր հիմնավորապես: Նույնիսկ երբ Փոր-հորը իր հերթական սիրո խոստովանությունը արեց նրան՝ նա պատասխանեց արցունքներով, որոնք հոսեցին մինչև հաջորդ օրը, դասղեկի ժամը: Իհարկե, «ճանճասիրությամբ» զբաղվելու համար Փոր-հորին երկու շաբաթով (ամենածանր պատիժն էր) զրկեցին դպրոցական կյանքից: Իսկ Ճանճը մի օր բարձրակրունկ կոշիկներով եկավ, թարթիչներին զոռ տվեց ու գնաց իր ադամանդյա արցունքներով ցողելու ամուսնական կյանքի առագաստը:

ՇՈՒՆ (ազնվացեղ): Մի տղա, որը արժանի կլիներ Չեխովի գրչին: Ուզած պահին հավասարի պես ընկերություն կաներ ցանկացած ուսուցչի կամ

ուսուցչուհու հետ, բայց էությամբ մնում էր յոթերորդ «բ»-ից: Անհանգիստ, պըրպըտուն էր, կծու լեզու ուներ և եթե մարդ չէր գտնում խայթելու, ինքն իրեն էր կըծում: Վտանգը դեռ ուսուցչանոցից ըզգում էր: Սիրո հարցերում անգերազանցելի էր: Կացնի վկայությամբ՝ նա սեր էր բացատրել ֆրանսերենի ուսուցչուհուն, և, պատկերացնո՞ւմ եք, չէր մերժվել: Ամեն խոսքից առաջ աչքով էր անում սրանըրան: Ծանր լեզու ուներ: Լսել եմ, որ դըպրոցն ավարտելուց հետո իր բոլոր ընդունակությունները ծալել-դրել է մի կողմ և ինչ-որ խանութում մսավաճառ է աշխատում: Ափսոս: Մեծ մարդ կդառնար Ծուռը:

ԿԱՊԻԿ: Որքան էլ Դարվինը պնդի՝ նա դեմքով նշույլ անգամ չէր հիշեցնում իր կապիկ նախահորը: Իսկ այդ անունը նա ստացել էր իր մի շարք այլ արժանիքների համար, որոնց թվում որպես դարպասապահ ցուցաբերած ճկունության և ուրիշներին կապկելու իր արտասովոր ընդունակությունների համար: Նրա պայուսակը միշտ լի էր ֆուտբոլային պարագաներով՝ գուլպաներ, ձեռնոցներ, կաշվե գնդակներ, սուլիչ, և այլն, և այլն: Աշխարհում ամենից շատ սիրում էր Պելեին: Տխրում էր, որ ինքը սևամորթ չէ: Պելեին նմանվելու ամենահիմնական գործոնը պակասում էր: Դեմ էր ուսուցման ներկա համակարգին: Ըստ նրա՝ բարձր դասարաններում օրական չորս դաս ֆիզկուլտուրա էր անհրաժեշտ, մեկ դաս էլ հայոց լեզու կամ աշխարհագրություն: Սիրում էր իր մականունը և գտնում էր, որ յուրաքանչյուր քաղաքակիրթ մարդ, բացի իր իսկական անունից, պետք է ունենա մի քանի մականուն: Անվանակոչության հանդիսություններին ամենաեռանդունն էր: Ուներ մեկ թերություն. ֆուտբոլին վերաբերող հարցերում կատակ չէր ընդունում և Պելեի հասցեին ուղղված քննադատություններին պատասխանում էր բռունցքով:

ԿՏՈՒՑ: Այդ անվանը արժանացավ իր ինքնատիպ և խիստ ազգային քթի համար: Այն հիշում էր բոլոր առիթներով, երբ հեռավոր ակնարկ էր լինում ընտանի կամ վայրի թռչունների մասին: Բացի արտաքին նմանությանը նա այդ պատվավոր անունը արդարացնում էր նաև իր անհանգիստ բնավորությամբ: Քիթը ամեն տեղ խոթում էր: Գիտեր ուսուցիչների հետ կապված մութ պատմություններ: Խռովարար էր: Թռուցիկներ էր տարածում՝ «Կորչեն դասերը, կեցցե ազատությունը», «Մեզ կերակրեք մարդավարի», «Խոհարար Մարթա, դո՛ւրս գիշերօթիկից»: Նրա պատճառով խոհարար Մարթան, որ մի համակրելի, բարի կին էր, հեռացավ գիշերօթիկից, բայց տարօրինակն այն էր, որ Կտուցը շարունակում էր թռուցիկ գրել նույն բովանդակությամբ. «Խոհարար Մարթա, դո՛ւրս գիշերօթիկից»:

## ՎԵՐՋԱԲԱՆ

Այս անձնանունների բառարանը ես կազմեցի ոչ միայն «անցյալի անուշեղենը վայելելու հաճույքը» զգալու համար, այլև ինչ-ինչ հոգևոր արժեքներ մոռացումից փրկելու մտադրությամբ: Այն վերջնական չէ և հավակնություն չունի յոթերորդ «բ»-ի լեզվական և ճանաչողական բնազդները լիարժեք բնորոշելու: Ըստ երևույթին, ես առաջիկայում ավելի խորը կզբաղվեմ այդ ուսումնասիրությամբ:

Ես այս աշխատանքով ևս մեկ նպատակ էի փայփայում: Կյանքը յոթերորդ «բ»-ին առել էր իր հորձանուտների մեջ: Հազար խաբկանք, հազար գայթակղություն և մեկ յոթերորդ «բ»՝ իր պարզամիտ և իդեալական օրենքներով: Ի՞նչ անի Կացինը, երբ հարվածը թիկունքից է: Կապիկն իր ֆուտբոլային մասունքներով կկարողանա՞ հասնել իր ճշմարտությանը: Ավանակը գլուխ կհանի գիտատեխնիկական հեղափոխության գլխապտույտից: Իսկ Կտո՞ւցը, ի՞նչ բովանդակություն կունենան նրա թռուցիկները:

Իսկ գուցե և նրանք մոռացե՞լ են իրենց անունները:

Եկեք, սիրելի Ծարպագուտն, Փոր-հոր, Ծանճ, եկեք մեկ օր մոռանանք այս հոգսաշատ և եռուն օրերը, սնդուկներում պահենք մեր տոնական կոստյումները, մեկ օրով ազատություն տանք մեր անձնական վարորդներին, մեր գայթակղիչ անուն-հայրանուններին, մեր քնքշալեզու կանանց և ամուսիններին: Եկեք կրկին հագնենք մեր մականուններն ու զոռ տանք մեր կծու լեզուներին: Այնքան եմ ուզում ևս մեկ օր ապրել յոթերորդ երկրնքում:

Աղոթում եմ քեզ համար, իմ յոթերորդ «բ»:

ՀԱՄԱՐԻՉԸ ԲԱԶՄԱՊԱՏԿԱԾ ՀԱՅՏԱՐԱՐՈՎ

ՔՈ՝ ՏԻՐԱՑՈՒ

# Կախարդված դդմամայրը

(հեքիաթ)



Ամառ էր:

Վաղորդյան շաղը փայլփլում էր խոտերի վրա: Վաղուց անձրև չէր տեղացել: Արարված հողը ճաքեր էր տալիս: Այգիներն ու բանջարանոցները այրվում էին:

Բոստանչի Համոյի ճակատից քրտինքի կաթիլներ էին կախվել: Նա մենակ էր ապրում ու աշխատում:

— Անիրավներն էլի ջուրս կտրեցին, չեն թողնում, որ մարդ վերջացնի իր գործը: Դե լավ, մնացածն էլ երեկոյան կջրեմ, ցերեկով ջրածն օգուտ չի տա:

Բահով ջուրը բացեց դդմի թաղարի վրա, ծխախոտը վառելով, նստեց կանաչներին: Հանկարծ աչքն ընկավ փոքրիկ դդմիկներին: Շատ զարմացավ:

Հրա՞շք էր, թե՞ իրականություն. դդմի թաղարներից կարծես ձմերուկներ էին կախված: Մոտեցավ, ձեռքով շոյեց փոքրիկ դդմիկները: Զարմանքից քար կտրեց, երբ մարդկային ձայն լսեց դդմի շարքից.

— Մի զարմացիր, բոստանչի եղբայր, որ կարողանում եմ խոսել մարդկային լեզվով: Շատ դարեր առաջ ես էլ մի կին էի երկրի վրա շրջող: Ամուսինս խոշոր առևտրական էր և ամենազորեղ կախարդը իր ժամանակի: Յոթ զավակ ունեցա, յոթ կտրիճ տղաներ: Երեխաները ամուսնուս սրտովը չէին, գլուխ չէին հանում առևտրից: Մի օր ամուսինս ասաց. «Երկար ժամանակով ես գնում եմ հեռու երկրներ, մեծ գործ եմ բռնել, ամբողջ ունեցվածքս ձեզ եմ հանձնում: Խելացի գործարք կանեք՝ մինչև վերադառնամ»: Անցան տարիներ, երբ նա վերադարձավ, կորցրել էր իր ամբողջ կարողությունը: Որդիներս էլ էին վնասով աշխատել այդ տարիներին: Տեսնելով մեր վիճակը, նա զայրացած գոռաց. «Դդումներ, այս ինչ եք արել, իմ կարողությունը մոխիր եք դարձրել»: Հետո զղջաց իր արտահայտության համար, բայց արդեն ուշ էր, նրա վերջին կախարդանքն իր ազդեցությունն ունեցավ: Ես դարձա մայր դդումը, իսկ տղաներս՝ դդմիկներ: Տեր ամուսինս ամեն տարի աճեցնում էր մեզ և իր արցունքներով ողողում, որ չչորանանք, բայց շուտով նա էլ մահացավ: Եվ մեր սերմերը տարածվեցին աշխարհով մեկ: Սիրելի բարեկամ, իմ դդմիկների կորիզները ոսկուց են, աճեցրու՝ ինչքան կուզես: Անհոգ կապրես մինչև քո կյանքի վերջը:

Տերունին մտածեց, մտածեց ու այսպես ասաց.

— Ինձ ոսկի պետք չէ, ես առանց այն էլ բավարարված մարդ եմ: Մի հոգս էլ դուք դարձաք ինձ համար: Ինչպե՞ս կարելի է փրկել ձեզ:

— Մենք արդեն փրկված ենք, իմ թանկագին բարեկամ:

Այս խոսքերը լսելուն պես բոստանչու դիմաց կանգնեց մի գեղեցիկ կին՝ շրջապատված յոթ փոքրիկ երեխաներով: Համոն շատ է զարմանում, բայց երբ հասկացավ կատարվածը, շատ ուրախացավ: Բոլորին հրավիրեց տուն, լավ հյուրասիրեց ու ասաց.

— Դուք հիմա դդումներ չեք, քաջ հողագործներ կդառնաք: Հողը բոլորիս էլ կկշտացնի:

Բոլորը սիրով գործի անցան: Երկնքից ընկավ անմահական խնձորի երեք ծառ: Տանք Համո քեռուն՝ հողամասում աճեցնի:

**ԱՆՆԱ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**
**Կիրովական, Վահան Տերյանի անվան դպրոց, 7-րդ դասարան**

# ՆԱԻՐԻԻ ՇՐՋԱՆԻ ՊԱՏԱ

Նոր թխված հացի հոտ է գալիս: «Գուցե շփոթվե՞լ եմ,— մտածում եմ:— Չէ, ահա և ցուցանակը՝ Նաիրիի շրջան. պատանի տեխնիկների կայան: Ուրեմն՝ ճիշտ եմ եկել: Բայց ի՞նչ գործ ունի հացը պատանի տեխնիկների կայանում»,— զարմանում եմ մտքումս:

Գաղտնիքը պարզվում է, երբ ներս եմ մտնում: Լավաշը, որ հիմա այդպես ախորժակով ուտում են ցուցասրահում հավաքված երեխաները, Երեմ Սարգսյանի մայրն է թխել… մի շաբաթ առաջ: Եվ որպեսզի մոր թխած հացը միշտ թարմ ու բուրավետ լինի, Երեմն արհեստական թոնիր է պատրաստել: Կախում ես չոր լավաշները թոնրի մեջ, սարքի ներքևի մասից բարձրացող գոլորշու շնորհիվ լավաշները մեկ րոպեից նախկին թարմությունն են ստանում: Այս սարքն էր, որ 1984 թ. Ալմա-Աթայում անցկացված գիտության, տեխնիկայի և արտադրության համամիութենական շաբաթում արժանացավ առաջին մրցանակի: Հացը համտեսելուց հետո ՍՍՀՄ տիեզերագնաց օդաչու Վյաչեսլավ Դմիտրիևիչ Զուդովը սարքի հեղինակին ասել է. «Նման սարք ունենալով՝ միջմոլորակային ճանապարհորդությունների ժամանակ մեզ հետ կարող ենք լավաշ վերցնել: Իսկական տիեզերական հաց է»: Հիմա Երեմը ծառայում է սովետական բանակում, բայց մայրը չի մոռանում իր թխած լավաշից ուղարկել՝ տղայի պատրաստած թոնրի համար:

— 1984, 85, 86 թթ. Ալմա-Աթայում, Բաքվում, Տալլինում անցկացված գիտության, տեխնիկայի և արտադրության շաբաթներում միշտ էլ հաղթող ենք ճանաչվել,— ասում է Երեմի թիմակիցը, այժմ արդեն խմբակավար Արթուր Հովակիմյանը, ու ինձ է մեկնում մի փոքրիկ ճամպրուկ:— Ապա բաց արեք:

Բացում եմ և տեսնում, որ շարժական սանդուղք է նստելատեղով, ղեկով, ոտնակներով: Պտտեցնում եմ ոտնակները՝ ինքն իրեն բարձրանում է: Առանց բացատրությունների էլ պարզ է, թե ինչ մեծ կիրառություն կարող է գտնել կենցաղում և կամ շինարարության մեջ:

Կայանի դիրեկտոր Գագիկ Դավթյանի հետ դիտում ենք ցուցասրահի մյուս սարքավորումները:

… Ռադիողեկավարվող ավտոմոդելի նոր նմուշ, ավտոմեքենայի դիմահար ապակու մաքրիչ, մեքենայի դռների ռետինե մասերը սոսնձող սարք, «Տեմպ—1» դասի ավտոմոդելի նոր նմուշ… Կայանի փոքրիկ գյուտարարների հայտնագործությունների ցուցակը դեռ էլի կարելի է շարունակել: Գրատախտակը ավտոմատ կերպով մաքրող սարքը պատանի տեխնիկների նվերն է իրենց դպրոցներին, իսկ ավտոմատ անջատիչը պատրաստել են շենքերի մուտքերում տեղադրելու նպատակով. լույսը պետք է վառվի միայն այն ժամանակ, երբ որևէ մեկը գտնվի մուտքում, էներգիայի ավելորդ կորուստ էլ չի լինի: Անտառահատ մեքենան փոխարինում է անտառահատների մի ամբողջ բրիգադի. հարմարավետ խցիկում նստած մեքենավարը էլեկտրոնային տելեսկոպի միջոցով կառավարում է մեքենայի «4 ձեռքերը»՝ ընտիպելով նրանց մաքրել ծառը ճյուղերից, հետո՝ կտրել այն ու փայտը դարսել համապատասխան հատվածում:

Խաղողագործների աշխատանքը թեթևացնելու համար նոր մեթոդ են առաջարկել Ռուստամ Ասատրյանի ղեկավարած գյուղմեքենաների խմբակի սաները: Խաղողի այգիներում նախկինում տեղադրվող բետոնասյուների փոխարեն տեղադրում են մետաղյա երկտավրներ (1 բետոնասյան տեղադրումը արժի 5 ռուբլի, 1 հա-ի վրա տեղադրվում է 325 բետոնասյուն, որոնք կարելի է փոխարինել 50 մետաղյա երկտավրներով): Կրճատվում են բետոնասյուների տեղադրման հետ կապված ծախսերը, աշխատատար պրոցեսները: Այս մեթոդի կիրառումը միայն Նաիրիի շրջանին տարեկան կտա 239000 ռ. տնտեսական օգուտ:

Ես զարմանում եմ, որ ընդամենը 4 տարվա պատմություն ունեցող կայանի սաները հասցրել են այսքան հետաքրքիր գործերի հեղինակ դառնալ:

— Դպրոցից տուն եմ գալիս ու անմիջապես վազում կայան,— պատմում է Եղվարդի №1 դպրոցի 6-րդ «ա» դասարանի աշակերտ Նելսոնը:— Սկզբում ծնողներս բարկանում էին, բայց երբ տեսան, որ

## ...Ի ՏԵԽՆԻԿՆԵՐԻ ԿԱՅԱՆ




սկսել եմ ավելի լավ սովորել, ընդհակառակը՝ ուրախացան: Հիմա, եթե տանը որևէ բան է փչանում, ես եմ նորոգում:

Ցուցասրահի նմուշները դիտելիս նըկատում եմ, որ նախորդ տարիների աշխատանքները ավելի շատ են ու ավելի հետաքրքիր, քան այս տարվանը:

— Հայտնագործություններ անելու ցանկությո՞ւնն է պակասել.— տարակուսանքով հարցնում եմ կոնստրուկտորական խմբակի տղաներին:

— Չէ,— պատասխանում են անմիջապես,— այս փոքրածավալ տրակտորը 1987-ին ենք պատրաստել: Կարող է աշխատել լեռնային ցանկացած պայմաններում, տնամերձ հողամասերում:

— Մեր ավտոխմբակի համար ավտոմոբիլի նոր նմուշներ ենք ստեղծել: Թե չէ ստիպված ենք պարապել 1, 2 հին ավտոմոբիլի վրա,— շարունակում է ավտոմոբիլային խմբակի սան, ութերորդցի Հակոբ Կիրակոսյանը:— Միայն թե…

— Ի՞նչ «միայն»,— հետաքրքրվում եմ:

Պարզվում է, որ դետալները հաճախ չեն բավականացնում, շատ սարքավորումներ արդեն հնացել են, նորը գնելու

հնարավորություն գրեթե չունեն։

— Շրջանի և Երևան քաղաքի հիմնարկ-ձեռնարկությունները ոչ միայն մեզ հումք մատակարարելու հարցում են թերանում (այն դետալները, որ օգտագործում ենք, շատ հաճախ գործարանների ամենաանովորական թափոններ են), այլև չեն ցանկանում իրենց թեմատիկ պլանների հետ ծանոթացնել, այսպես կոչված «զլուխ դնել» երեխաների հետ։ Մինչդեռ այդ պլանների իրականացման գործում մեր սաները մեծ օգնություն կարող են ցույց տալ,— բացատրում է կայանի դիրեկտորի տեղակալ Վարազդատ Թորոսյանը։

Սա դեռ հարցի մի կողմն է, մյուսը կապված է այն քաշքշուկի հետ, որին հանդիպում են խմբակավարները՝ գյուտարարական առաջարկների արտոնություն ստանալիս։ Երեխաները մտածում են, փնտրում են, հայտնագործում են, բայց շատ հաճախ այդ հայտնագործությունները այդպես էլ մնում են սոսկ որպես տեխնիկական գծագրեր ու մոդելներ և կիրառություն չեն գտնում, չնայած որ կիրառվելիս կարող են հազարավոր ռուբլիների օգուտ տալ ժողովրդական տնտեսությանը։ Երեխաներն էլ հիասթափվում են։

Այս պրոբլեմը լուծելու համար կայանի ղեկավարությունը որոշել է արտադրությունը կազմակերպել տեղում՝ հենց պատանի տեխնիկների կայանում։

Արտադրանքի թողարկումը կսկսվի մոտակա ամիսներին։ Արդեն պայմանավորվածություն կա առևտրական և սպասող այլ կազմակերպությունների հետ, որոշված է աշխատանքի կազմակերպման ձևը, արտադրանքի տարեկան պլանը՝ 600000 ռուբլի։

Երեխաները կվարձատրվեն 1-ին կարգի բանվորների պես։ Աշխատավարձը կփոխանցվի խնայողական դրամարկղ։ Գումարը երեխան իրավունք կունենա ստանալ դպրոցն ավարտելուց հետո։ Այդ ժամանակ էլ հաստատության վկայականի հետ նրան կհանձնվի մասնագիտական վկայականը։ Արտադրության կազմակերպումը կօգնի տեղում լուծելու գյուտարարական առաջարկների ներդրման, մասնագիտական կողմնորոշման հարցերը։ Ստացված եկամուտը կօգտագործվի նաև կայանը անհրաժեշտ տեխնիկական սարքավորումներով ապահովելու համար։

ԳՈՀԱՐ ՕՀԱՆՅԱՆ



Տիգրան Մեծի գործերը հաջող էին գնում։ Նա կրկին հնազանդեցրեց Կապադովկիան։ Հռոմեական լեգիոնները հայերի վրա չէին համարձակվում հարձակվել։ Մեծ Հայքը միասնական էր ու խաղաղ։ Տիգրանի նվաճած մյուս երկրները հայոց իշխանության տակ էին։ Բայց այդ ժամանակ (մ. թ. ա.) 67 թ. Տիգրան Մեծի դեմ ապստամբեց նրա որդին՝ Տիգրան Կրտսերը, որին հայրը նշանակել էր Ծոփքի կառավարիչ։ Տիգրան Մեծի զորքերը հեշտությամբ հաղթեցին ապստամբներին։ Տիգրան Կրտսերը փախավ պարթևների մոտ։ Պարթևների թագավորը մեծ զորքով մտավ Հայք՝ Տիգրան Կրտսերին հայոց գահին նստեցնելու համար։

Պարթևները հասան Արտաշատ, բայց քաղաքը գրավել չկարողացան։ Ապա վրա հասած Տիգրան Մեծն իր զորքով ջախջախեց պարթևներին։ Տիգրան Կրտսերը այս անգամ փախավ Հռոմի բանակը, Պոմպեոսի մոտ։ Պոմպեոսը խոստացավ նրան հայոց գահը։

Իսկ Միհրդատ Եվպատորը դժգոհ էր Տիգրան Մեծից, քանի որ սա՝ զբաղված հայոց գործերով, չէր օգնել իրեն դըժվար պահին։ Նա Տիգրան Մեծին մեղադրելով ասում էր. «Երբ հարևանի տունը հրդեհ է ընկնում, պետք է օգնել հանգցնելու, թե չէ, քո տունն էլ կհրդեհվի»։ Բայց Տիգրանը, զգալով հռոմեական բանակների հզորությունը, չէր ուզում խառնվել պոնտա-հռոմեական գործերին։ Նա գիտեր նաև, որ Միհրդատն օգնել էր իր դավաճան որդուն։ Ի վերջո, Պոմպեոսը հաղթեց Միհրդատի բանակին, և սա փախավ Ղրիմ՝ իր թագավորության հյուսիսային թերակղզին։

Պոմպեոսը Տիգրան Կրտսերի ուղեկցությամբ հռոմեական մեծ զորքերով մըտավ Հայք և հասավ Արտաշատ։ Տիգրանը կշռադատելով ու համոզվելով, որ հռոմեական հսկա բանակին այդ պահին ինքը հաղթել չի կարող՝ դիմեց մի այլ քայլի։ Երբ Պոմպեոսի բանակը Արաքսի ափին ճամբար էր խփել, այդտեղ երևաց միայնակ մի ծերունի, արքայական թագը գլխին, բոլորովին անզեն։ Նա մոտեցավ Պոմպեոսին, թագը հանեց գլխից և դրեց Հռոմի զորքերի գլխավոր հրամանատարի ոտքերի մոտ։ Պոմպեոսը ճանաչեց Տիգրան Մեծին, հուզվեց, թագը գետնից վերցնելով՝ կրկին դրեց Տիգրանի գլխին։ Դա նշանակում էր, որ Պոմպեոսը Տիգրանին ճանաչեց որպես





ԶՐՈՒՅՑ ՔՍԱՆՅՈԹԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# Տիգրան և Արտավազդ

հայոց թագավոր: 75-ամյա Տիգրանը հմտորեն օգտագործեց Պոմպեոսի գթասրտությունը: Իսկ Տիգրան Կրտսերը ապըստամբեց Պոմպեոսի դեմ, բայց արդեն ուշ էր: Նրան շղթայեցին:

Մ. թ. ա. 66 թ. Արտաշատում Տիգրանի և Պոմպեոսի միջև կնքվեց բարեկամության պայմանագիր: Ամբողջ Մեծ Հայքն իր սահմաններում՝ 316 հազար քառակուսի կիլոմետր տարածքով, մընաց Տիգրանի իշխանության տակ որպես անկախ պետություն, իսկ Հայաստանի նվաճած բոլոր երկրներն անցան Հռոմին: Սա հայերի համար թեև պարտություն էր, քանի որ Տիգրան Մեծը կորցրեց նվաճած շատ երկրներ, բայց դա նաև հաղթանակ էր հայերի համար, քանի որ Մեծ Հայքի ամբողջությունն ու անկախությունը պահպանվեց, չնայած Հռոմի զորքերի գերազանց ուժին: Ապա՝ Պոմպեոսը բարեկամացավ Տիգրան Մեծի հետ: Այս անգամ հաղթեց դիվանագետ Տիգրան Մեծը: Պոմպեոսն օգնեց հայերին նաև այն ժամանակ, երբ պարթևները փորձում էին նորից գրավել Կորդվաց աշխարհը: Հռոմն այդ երկրամասը ճանաչեց որպես Մեծ Հայքի անբաժան մաս, և պարթևները նահանջեցին, հայկական զորամասերը մտան Կորդվաց աշխարհ: Մեծ Հայքում շուրջ 10 տարի խաղաղություն էր ու բարգավաճում: Մ. թ. ա. 55 թ. խոր ծերության մեջ վախճանվեց Տիգրան Մեծը, հայոց բոլոր թագավորներից ամենահզորն ու ամենահաջողակը: Հայոց գահ բարձրացավ Արտավազդ II-ը:

Տիգրան Մեծի և Արտավազդ II-ի ու նրանց ժամանակի մասին վկայում են հին աշխարհի օտարազգի շատ պատմիչներ՝ Հուստինոսը, Ապիանոսը, Ստրաբոնը, Պլուտարքոսը, Դիոդորոսը, Հովսեփ Փլաբիոսը և ուրիշներ, ինչպես և մերոնցից՝ Փավստոս Բուզանդն ու Մովսես Խորենացին:

Տիգրան Մեծի մահից հետո պարթևների պետությունն իրեն ազատ զգաց, ասպարեզից դուրս էր եկել իր զորեղ հակառակորդը: Պարթևները ձգտում էին վերականգնել Աքեմենյանների մեծ կայսրությունը, և նրանց գլխավոր թշնամին դարձավ Հռոմը: Հռոմն էլ իր հերթին ձգտում էր վերականգնել Ալեքսանդր Մակեդոնացու կայսրությունը իր իշխանության տակ: Ահա Արևելքի և Արևմուտքի այս 2 հզորացած ուժերի մեջտեղում էր Հայաստանը: Հայերն այլևս չունեին Արամի կամ Արա Առաջինի, Արտաշեսի կամ Տիգրան Մեծի հզոր պետությունը: Ընդհակառակը, հայերի վիճակը ծանրացել էր. նրանցից արևմուտք և արևելք երկու հսկա կայսրություններ էին գոյացել, որոնց դեմ Հայքը միայնակ ի վիճակի չէր պայքարել:

Ո՞ւմ կողմն անցնել: Մնալ չեզոք, դըժվար էր, անհնար: Հայքի այս վիճակը շարունակվեց շատ երկար, մոտ 300 տարի, և փորձը ցույց տվեց, որ այդ ընթացքում երբ Հայաստանը կարողանում էր դաշնակցել և բարեկամ մնալ պարթևների հետ, ավելի հաջողակ էր լինում:

Արտավազդ II-ը բանաստեղծ էր, թատերագիր: Նրա թատերգությունները Արտաշատի բացօթյա թատրոնում բեմադրվում էին: Նա հայ թատրոնի հիմնադիրն է եղել: Բայց նա նաև դիվանագետ թագավոր էր: Հռոմեացիները նրան անընդհատ համոզում էին, որ իրենց հետ միանա, և միասին արշավեն պարթևների դեմ, բայց Արտավազդը խուսափում էր դրանից:

Այդ ժամանակ Արևելքում հռոմեական զորքերի հրամանատարն էր Կրասոսը՝ Հռոմի ամենահարուստ մարդը: Նա հռոմեական առաջին եռապետության անդամն էր՝ Հուլիոս Կեսարի և Պոմպեոսի հետ: Կրասոսը արյան մեջ խեղդել էր Սպարտակի ապստամբությունը և այժմ եկել էր Արևելք՝ պարթևներին վերջնա-



կանապես ջախջախելու նպատակով: Տիգրան Մեծի և Պոմպեոսի կնքած բարեկամության պայմանագրի համաձայն Արտավազդը զորք էր տալիս Կրասոսին, բայց գաղտնի լավ հարաբերություն էր պահպանում պարթևների թագավոր Օրոդեսի հետ: Արտավազդի դուստրն ամուսնացավ Օրոդեսի որդի Բակուրի հետ:

Կրասոսի զորքերը Միջագետքով հարձակվեցին պարթևների վրա: Մ. թ. ա. 53 թ. Միջագետքի Խառան քաղաքի մոտ պարթևների զորքը Սուրեն զորավարի գլխավորությամբ ջախջախեց հռոմեական ամբողջ բանակը և սպանեց Կրասոսին: Պարթևները գերի վերցրին շատ հռոմեացիների և նրանց արծվակիր դրոշակները:

Սուրենի զինվորները Կրասոսի գլուխը բերեցին Արտաշատ և նետեցին այստեղի թատրոնի ասպարեզը: Թատրոնում ներկայացվում էր հույն ողբերգակ Էվրիպիդեսի «Բաքոսուհիներ» թատերգությունը: Այդտեղ էին և՛ հայոց թագավոր Արտավազդը, և՛ պարթևների թագավոր Օրոդեսը: Այդպես նորից պարտվեց հռոմեական բանակը: Հետո Օրոդեսը նախանձելով Սուրենի փառքին՝ սպանել տվեց նրան: Ապա՝ հայ-պարթևական զորքերը հայոց Վասակ և պարթև Բակուր զորավարների գլխավորությամբ սկսեցին Ասորիքում, Փյունիկիայում և այլուր հռոմեացիներից ազատագրել քաղաք քաղաքի հետևից: Ժողովուրդը, որ զզված էր Հռոմի դաժան տիրապետությունից, գնծությամբ էր ընդունում հայերին ու պարթևներին: Իսկ Հռոմը զբաղված էր իր ներքին պատերազմով, որ միմյանց դեմ մղում էին Հուլիոս Կեսարն ու Պոմպեոսը: Հայերը օգնում էին Պոմպեոսին, բայց հաղթեց Կեսարը: Չնայած սրան էլ իր զինակիցները սպանեցին մ. թ. ա. 44 թ.:

Շուտով Արևելքում հայտնվեց Հռոմի Անտոնիոս զորավարը՝ Պտղոմեոսյան Եգիպտոսի թագուհի Կլեոպատրայի ամուսինը: Նա հորդորում և ստիպում էր հայոց Արտավազդ II-ին իր զորքերի հետ արշավել Ատրպատական՝ պարթևների դեմ: Արտավազդը ձևականորեն համաձայնեց, զորք տրամադրեց հռոմեացիներին, բայց բարեկամությունը պարթևների հետ շարունակում էր: Անտոնիոսի զորքերը շրջապատեցին Ատրպատականի Փրաասպա մայրաքաղաքը, բայց գրավել չկարողացան: Արտավազդը հայկական զորամասերը՝ ետ կանչեց Հայաստան, քանի որ պարթևների դեմ արդեն տանուլ տված այդ պատերազմը կարող էր միայն պարթևներին վերջնականապես թշնամացնել հայերի հետ: Սա զայրացրեց Անտոնիոսին, և նա մեկնելով Եգիպտոս, այստեղ հաշտության դաշինք կնքեց պարթևների հետ:

Անտոնիոսն առիթ էր որոնում վրեժ լուծելու Արտավազդից: Նա ամեն կերպ համոզում էր հայոց թագավորին գալ իր մոտ բանակցելու: Արտավազդը հրաժարվում էր: Ի վերջո, Անտոնիոսը իր զորքով մտավ Հայաստան և նորից իր մոտ կանչեց Արտավազդին: Այս անգամ հայոց թագավորը հավատաց Անտոնիոսի խոստումներին և գնաց նրա մոտ: Դա մեծ սխալ էր արված հայոց թագավորի կողմից: Անտոնիոսը խաբեց Արտավազդին, գերեց նրան ու նրա ընտանիքը և տարավ Եգիպտոս: Այստեղ Ալեքսանդրիա քաղաքում Անտոնիոսը ճոխ հանդես կազմակերպեց՝ հայերի նկատմամբ իր հաղթանակի առթիվ: Գերիներն անցնում էին գահին բազմած թագուհու՝ Կլեոպատրայի առջևով: Նրանց մեջ էին Արտավազդն ու իր ընտանիքը՝ շղթայված ոսկե շղթաներով: Անտոնիոսը նրանց հանձնեց Կլեոպատրայի ողորմածությանը: Հայերը պետք է երկրպագեին ու փառաբանեին Կլեոպատրային և այդպես ազատ արձակվեին նրա կողմից: Բայց նրանք այդ չարեցին, չխոնարհվեցին օտար թագուհու առաջ: Եվ Կլեոպատրան պատժեց նրանց: Հայոց Արտավազդ II-րդ թագավորին նա գլխատել տվեց:

(շարունակելի)



## Մատթեոս Զարիֆյան
**1894—1924**

## Կարեկցություն

Պզտիկ աղջիկ մ'ինծի կ'ըսէ
Թէ զիս խենթի պէս կը սիրէ.
Պզտիկ աղջիկ մը զիս սիրէ՜...

Գիշերն անհուն իմ աչքերուն
Երնի դեռ նա չէ տեսեր
Պզտիկ աղջիկ մ'ինծի տա սէ՜ր...

Երնի դեռ նա չէ նայեր
Հոգվույս խավար անդունդն ի վար.
Պզտիկ աղջիկ մ' ինձ սիրահա՜ր...

Եթէ լսեր թէ ո՛չ մէկ սեր
Այդ անդունդին մեջ կը շնչեր՝
Հեք պզտիկի չէ՞ր հառաչեր...

Ուստի եղբոր մը պէս ըսի
Թէ լուսնին տակ մարդ կը մսի.
«Գնա, գնա, ննջէ», ըսի.

Հետո գացի հեռուն լացի...

## Տառապանք

Տխուր եմ նորեն
— Ինչո՛ւ, չեմ գիտեր—
Հոգվույս մեջ անտեր
Մե՛ծ հողակույտեր
Կարծես կը փորեն...

Պառկած եմ նորեն
— Ինչո՛ւ, չեմ գիտեր—
Հոգվույս մեջ անտեր
Թունավոր նձտեր
Կարծես կը պարեն...

Ու ձեռք մը սառե
— Ինչո՛ւ, չեմ գիտեր—
Հոգվույս մեջ անտեր
Հին, թաղված վշտեր
Նորեն կը քրքրե...

Ու նորեն կ' այրե
— Ինչո՛ւ, չեմ գիտեր—
Հոգվույս մեջ անտեր
Հավատքներըս ծեր
Այդ Ձեռքը սառե...

Ու թշվառորեն
Ես̀ կուլա՛մ նորեն...

ԳԱԲՐԻԵԼ ԳԱՐՍԻԱ ՄԱՐԿԵՍ
(Կոլումբիացի գրող)

# Մեր ֆանտաստիկ իրականությունը

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

... Լատինական Ամերիկայում և Կարիբյան ավազանի երկրներում արվեստագետը համարյա ոչ մի բան ստիպված չի լինում հորինելու: Նրա համար գոյություն ունի մեկ այլ խնդիր. ինչպես անել, որ հավատան իր պատկերած իրականությանը: Եվ այդպես է եղել միշտ, մեր պատմության ամենասկզբից: Մեր գրականության մեջ չկան այնպիսի գրողներ, որոնց ավելի քիչ հավատային և որոնք ձգտեին ավելի ճշմարտացի լինել, քան այն հեղինակները, որոնք գրել են Վեստ-Ինդիայի նվաճման ժամանակագրությունը: Քրիստափոր Կոլումբոսի օրագիրն այս կարգի գրականության հնագույն նմուշներից է:

Կոլումբոսն ասում է, որ 1492 թ. հոկտեմբերի 12-ին իրենց դիմավորող մարդիկ «մորեմերկ» էին: Ուրիշ ժամանակագիրներ նույնպես պնդում են, որ Կարիբյան կղզիների բնիկները, որոնք քրիստոնեական բարոյականությունից իրենց դեռ անվտանգ էին զգում, մերկ էին ման գալիս, ինչը միանգամայն բնական է արևադարձային գոտիների բնակիչների համար: Այդուհանդերձ, այն «նմուշները», որ Կոլումբոսը Բարսելոնի թագավորական պալատ էր բերել, իրենց մարմինը ծածկել էին արմավենու ներկված տերևներով ու փետուրներով, տարօրինակ կենդանիների ատամներից ու ճանկերից շարած վզնոցներով: Թվում է, թե դա հեշտ է բացատրել. Կոլումբոսի ճանապարհորդությունը, հակառակ նրա հույսերի, տնտեսական ձախողմամբ էր ավարտվել: Նա ոչ միայն չէր գտել թագուհուն խոստացած ոսկին, այլև կորցրել էր իր նավերի մեծ մասը, չէր կարողացել բերել իր հայտնագործության կարևորությունն ապացուցող որևէ բան, որն արդարացներ այդքան երկար ու թանկ ճանապարհորդությունը: Այնպես որ, նա իր գերյալներին պիտի այդ կերպ հագցներ՝ զուտ ռեկլամի համար: Միայն խոսքերին հազիվ թե որևէ մեկը հավատար. չէ՞ որ ընդամենը երկու դար առաջ Մարկո Պոլոն Չինաստանից այնպիսի անհերքելի վկայություններ էր բերել, ինչպիսիք էին սպագետտին և մետաքսի շերամը:

Էլդորադոյի առասպելը ամենաչքնաղն է, տարօրինակն ու վճռորոշը մեր պատմության մեջ: Այդ երևակայական երկիրը որոնողները նվաճեցին այսօրվա Կոլումբիայի համարյա կեսը, իսկ ճանապարհորդներից մեկը գտավ Ամազոնը: Եվ ինչն է ավելի աներևակայելի. նա Ամազոնը հայտնաբերեց լողալով հոսանքն ի վար՝ հակառակ գետեր հայտնաբերելու սովորական ուղղությանը: Սակայն Էլդորադոն բոլոր ժամանակների համար գաղտնիք կմնա: Ճիշտ այդպես էլ երևի ոչ ոք երբեք չի իմանա, թե ուր կորավ ոսկու այն հսկայական պաշարը, որ ուղարկվել էր ինկերի տիրակալին՝ որպես տուրք: Կոնկիստադորների դյուրահավատությունը լիովին բացատրելի է, եթե հիշենք այդ դարերում տիրապետող մետաֆիզիկական տենդը և գրական խանդավառությունը, որով ընդունվում էին ասպետական վեպերը: Միայն դրանով կարելի է մեկնաբանել Կաբեսա դե Վակայի արտառոց արկածը. նրա նպատակն ավելի վեհանձն ու բանաստեղծական էր, քան Էլդորադոյի ոսկին. նրա արշավախումբը փնտրում էր հավերժական երիտասարդության ակունքը:

Պիսարոն հրաշալի գիտեր բազմաթիվ վեպեր, որ պատմում էին այն քուրմերի մասին, որոնցով բավական էր շփել ասպետների կտրված գլուխները, որպեսզի դրանք միանգամից վերաճեին մարմիններին: Եվ ինչու նա չպիտի հավատար, երբ նրան 16-րդ դարում պատմում էին բոլորովին ոչ հեռու մի թագավորության մասին, որտեղ երեք հազար արհեստավորներ գիշեր ու զօր զբաղ-

ված էին մաքուր ոսկուց կահույք պատրաստելով, և որտեղ թագավորի պալատի ոսկե սանդուղքը պահպանում էին ոսկե շղթաներով ոսկե առյուծները: Առյուծներ՝ Անդերում: Նունյես դե Բալբոային նույնպես շարադրել էին նման մի պատմություն, որի շնորհիվ նա հայտնագործեց Խաղաղ օվկիանոսը: Պիսարոն առանձնապես ոչ մի բան չհայտնաբերեց, բայց նրա դյուրահավատության աստիճանը հնարավոր է չափել այն արշավախմբի մեծությամբ, որը նա հանդերձավորեց անհավանական թագավորության որոնումների համար. 300 իսպանացի, 4 հազար հնդկացի, 150 ձի և հազարից ավելի շուն, որոնց վարժեցրել էին մարդ որսալու համար:

Ամենալուրջ խնդիրներից մեկը, որը մեր անպարագիծ իրականությունը դրնում է գրականության առաջ՝ բառերի անհամարժեքությունն է: Երբ մենք գետի մասին ենք խոսում, եվրոպական ընթերցողը անկարող է պատկերացնել ավելի վիթխարի բան, քան Դանուբը, որի երկարությունը 2850 կիլոմետր է: Մինչև չնկարագրես, նրա համար դժվար է պատկերացնել Ամազոնը՝ յոթ հազար կիլոմետր երկարությամբ: Տեղ-տեղ մեր գետն ավելի լայն է, քան Բալթիկ ծովը: Երբ մենք, «ամպրոպ» բառն ենք գրում, եվրոպացիները պատկերացնում են որոտ ու կայծակ, բայց նրանց համար դժվար է երևակայել այն, ինչ մենք նկատի ունենք: Անդերում, ըստ ֆրանսիացի ականատեսի վկայության, տեղատարափ անձրևը գալիս է հինգ ամիս անընդմեջ. «Նա, ով չի տեսել այդ ամպրոպները, չի կարող պատկերացնել դրանց մոլեգնությունը: Երկար ժամեր շանթերը հետևում են իրար՝ ինչպես արյան ջրվեժներ, և մթնոլորտը դողում է անվերջանալի որոտներից, որոնք արձագանքվում են անծայրածիր լեռներում»: Այս ժլատ նկարագրությունն էլ հերիք է, որ նույնիսկ ամենակասկածամիտ եվրոպացին անգամ սարսափից ցնցվի:

Որպեսզի ամբողջությամբ հաղորդենք մեր իրականության անսահմանությունը, ստիպված պիտի լինեինք նոր բառեր հորինել: Այդ անհրաժեշտությունը հաստատում են բազմաթիվ օրինակներ: Հոլանդացի ճանապարհորդ Ֆ. Վ. դե Գրաֆֆը, որը այս հարյուրամյակի սկզբին հետազոտել է Ամազոնի վերին հոսանքները, գրում է, որ գտել է աղբյուրներ, որոնց ջրով հինգ րոպեում կարելի է ձու եփել, և որ որոշ տեղերում հերիք է ամբողջ ձայնով ինչ-որ բան ասել, որպեսզի տեղատարափ սկսվի: Կոլումբիայի կարիբյան ծովափին ես հանդիպեցի կովի առաջ աղոթող մի մարդու: Երբ նա ավարտեց աղոթքը, ես տեսա, որ կովի ականջներից սատկած ճիճուներ դուրս թափվեցին: Այդ մարդը հավատացնում էր, որ բուժման այսօրինակ կուրսեր կարող է անցկացնել նաև հեռավորությունից, բավական է միայն նրան նկարագրել անասունին ու տեղանքը, որտեղ այն գտնվում է: 1902 թվականի մայիսի ութին Մարտինիկում «արթնացավ» Պելե հրաբուխը: Մի քանի րոպեում այն ավերեց Սենտ-Պիեռ նավահանգիստը, հրահեղուկ զանգվածի տակ թաղելով քաղաքի 30 հազար բնակիչներին: Բացառությամբ մեկի՝ Սիլվարիսի, որն այդ քաղաքի միակ բանտարկյալն էր: Նրան փրկեցին խցի ամուր պատերը՝ սարքված հատկապես այն նպատակով, որ նա չկարողանա փախչել:

Ինձ հատորներ պետք կգային, որպեսզի նկարագրեի Մեքսիկայի անհավատալի իրականությունը: Ես այստեղ եմ ապրում ահա քսան տարի և մինչև այժմ էլ շատ ժամեր եմ անցկացնում (ու դրանով զբաղվում եմ մշտապես), հետևելով ցատկող բակլաներով թաղարին: Ինձ ասացին, որ բակլաների այդպիսի շարժունակությունը պայմանավորված է այն բանով, որ դրանց մեջ կենդանի թրթուրներ են տեղավորվել: Այդ բացատրությունն ինձ բավարար չի թվում: Հրաշքն այն չէ, որ բակլաները շարժվում են, որովհետև նրանցում թրթուրներ կան. հրաշքն այն է, որ թրթուրները բնակվում են բակլաների մեջ, որ բակլաները կարողանում են թռչել: Աներևակայելի իրականությունն առավելագույն թափ է ձեռք բերում Կարիբյան կղզիներում: Այստեղ պարզունակ առասպելներին ու կախարդական հավատալիքներին խառնվել է մի քանի շռայլ մշակութային շերտանըստվածք. այդ ամենը կազմել է մի մոգական միասնություն, որի գեղարվեստական բեղունությունն ուղղակի անսպառ է: Աշխարհների այս խաչմերուկում կոփվել է անսահման ազատության, անսանձ ու անօրեն իրականության զգացումը, որտեղ յուրաքանչյուրն ու ամեն ոք ենթադրել է, որ կարող է անել սրտի ուզածը. գողերը հանկարծ սկսում էին մտածել, որ իրենք արքաներ են, աքսորականներն իրենց կարծում էին ծովա-

կալ, կուրտիզանուհիները՝ նահանգապետի կին: Եվ՝ ընդհակառակը:

Ես ծնվել ու մեծացել եմ Կարիբյան ծովափին: Ես գիտեմ այդ աշխարհը, նրա ամեն մի երկիրը, ամեն կղզին, և ահա թե ինչն է ինձ հուսախաբ անում. ո՛չ ինձ հետ է պատահել մի բան, որ իրականությունից ավելի սարսափելի լիներ, ո՛չ էլ ես եմ կարողացել այդ բանը հորինել: Ահա թե առավելագույնը ինչի եմ ես ընդունակ. փոփոխել իրականությունը բանաստեղծական միջոցներով. բայց և այնպես իմ գրքերից և ոչ մեկում չկա և ոչ մի տող, որը չհաստատվեր փաստերով: Իրականությունը փոխելու իմ այդպիսի փորձերից մեկը գոճու պոչիկն էր, որն այնքան անհանգստություն պատճառեց Բուենդիա ընտանիքի անդամներին՝ «Հարյուր տարվա մենություն» վեպում: Ես կարող էի ինչ ասես հորինել, բայց ինձ թվաց, որ եթե ես նորածնին օժտեմ գոճու պոչիկով, ապա դա նվազագույնս կհամընկնի իրականությանը: Այնուհանդերձ, հենց որ վեպը հռչակ ձեռք բերեց, երկու Ամերիկաների տարբեր մասերում սկսեցին հայտնվել պոչիկ ունեցողների խոստովանությունները: Մի երիտասարդ այդ մասին հայտարարեց թերթի միջոցով: Այս առթիվ նրա պարզաբանությունը նույնիսկ է՛լ ավելի զարմանալի էր, քան ինքը պոչիկը: Նա պոչիկով էր ծնվել, բայց երբեք և ոչ մեկին այն չէր ցուցադրել, քանի դեռ չէր կարդացել «Հարյուր տարվա մենությունը»: «Ես չէի ուզում ոչ մեկին այդ մասին պատմել, որովհետև ամաչում էի,— ասել



է նա:— Բայց հիմա, կարդալով վեպը ու լսելով նրանց, ովքեր նույնպես այն կարդացել են, հասկացա, որ դա բացարձակապես բնական բան է»: Դրանից շատ չանցած, մի ընթերցող ինձ ուղարկեց թերթի կտրածո, որտեղ խոսվում էր սեուլցի մի աղջկա մասին: Նա էլ էր պոչիկով ծնվել, բայց հակառակ իմ ենթադրածին, աղջկա պոչիկը կտրել են, և



նա կենդանի է մնացել: «Նահապետի աշունը» գրելու նախապատրաստությունը ամենաբարդն էր իմ գրողական փորձում: Համարյա տասը տարի ես կարդում էի այն ամենը, ինչը կարողանում էի գտնել լատինաամերիկյան դիկտատորների և հատկապես նրանց մասին, ովքեր բռնատիրում էին Կարիբյան ավազանում, որպեսզի գիրքը որքան կարելի է քիչ հիշեցներ կյանքը: Բայց ամեն քայլափոխի հուսախաբությունների էր դեմ առնում: Վենեսուելական դիկտատոր Խուան Վիսենտե Գոմեսը այնպիսի նախազգացում ուներ, որ տալիս-անցնում էր ուզածդ մարգարեական ձիրք: Հաիթիի դիկտատոր դոկտոր Դյուվալյեն երկրից վռնդեց բոլոր սև շներին, որովհետև նրա թշնամիներից մեկը, ջանալով փրկվել վռնդեց բոլոր սև շներին, որովհետև նրա մարդկային կերպարանքն ու սև շան մարմնի մեջ էր սողոսկել: Դոկտոր Ֆրանսիան, որի հեղինակությունը չափազանց մեծ էր որպես մտածող, փակեց Պարագվայի հանրապետությունը, ասես դա իր սեփական տունը լիներ՝ բաց թողնելով միայն մի օդանցք, որի միջով փոխանցում էին փոստը: Մեր Անտոնիո Լոպես դե Սանտանան թաղեց իր սեփական ոտքը, հուղարկավորությունը զուգակցելով ճոխ պատիվներով: Լոպե Ագիրրեի կտրված ձեռքն արձակեցին գետըն ի վար, ու յուրաքանչյուր ոք, ով որ տեսնում էր այն, ահից դողում էր, մտածելով, որ սարսափելի ձեռքը դեռ ի վիճակի է դանակ թափ տալ: Անաստասիո Սոմոսա Գարսիայի կալվածքում գազանանոց կար, որի վանդակները թեթև ճաղերով երկու մասի էին բաժանված. մի կեսում գտնվում էր վայրի գազանը, մյուսում՝ Սոմոսայի քաղաքական հակառակորդը: Մաքսիմիլիան Էռնանդո Մարտինեսը, սալվադորյան աստվածաբան-դիկտատորը, հրամայեց փողոցի բոլոր լապտերներին թղթե թասակ հագցնել, որպեսզի հաղթահարի կարմրուկի համաճարակը: Մորասանի արձանը, որը դեռ կանգնած է Տեգուսիգալպեում, իրականում մարշալ Նեյի արձանն է: Երբ պաշտոնական անձինք Լոնդոն էին ժամանել անհրաժեշտ քանդակը պատվիրելու, եկել էին այն եզրակացության, որ ավելի էժան կնստի գնել արդեն պատրաստ ու պահեստ խցկած արձանը, քան թե ձախս անել իսկական Մորասանի համար:

Կարճ ասած, մենք՝ Լատինական Ամերիկայի և Կարիբյան ավազանի գրողներս, պետք է ձեռքներս սրտներիս դըրած խոստովանենք, որ իրականությունը շատ ավելի լավ գրող է: Մեր ճակատագրի, ու երևի նաև մեր փառքի գաղտնիքն այն է, որ փորձում ենք խոնարհությամբ մեր բոլոր ընդունակությունները ներդնելով՝ նմանօրինակել իրականությունը:

**Թարգմանեց ՎԱՀՐԱՄ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԸ**

ԳՈՒՐԳԵՆ
ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

## Արդար բաժանում

(ժողովրդական)

Առատ ամառ,
Ու ծով տարի,
Ու հնձեցինք
Բերքն ու բարին:

Ու հնձեցինք,
Ու դիզեցինք,
Ու պարկերով
Բաժանեցինք:—

Ցանողին՝ պարկ,
Ջրողին՝ պարկ,
Հնձողին՝ պարկ,
Կրողին՝ պարկ:

Ծույլին անգամ
Հասավ մի պարկ,
Հսկա մի պարկ,
Սակայն՝ դատարկ:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

## Իրիկունը

Իրիկունը՝ բոբիկ տղա՝
Բակից-բակ է պտտվում,
Ծնճղուկներն են ճամփի վրա
Լույսի բուրդը քթվթում:

Սարից հոտը տուն է գալիս
Ու փեթակներն են ննջում...
Գառը արդեն մեր են տալիս,
Կաթը խշշում է փարչում:

Ես կանգնել եմ դռան առաջ
Ու նայում եմ երկնքին,
Չղջիկներն են գնում թռած
Սպասում եմ լուսնյակին:

Դեռ աստղերը չեն երևում
Մութն է նման պարսպի...
Կայծկոռիկ է դեզին ծնվում
Հանց մորուքին իմ պապի:

— Սո՜ւս, գալիս է հովը հանկարծ,
Ծառից խնձոր է կաթում,
Անհայտներից, ասես, եկած
Ինչ-որ վախ է ինձ պատում:

Տուն եմ փախչում դրսից հանկարծ
Փաթաթվում իմ մայրիկին,
Քուն է դնում ինձ իր գրկում,
Ինչպես հավքը իր ձագին:

## Քույրս

Քույրս ծնկել է կարպետին,
Քույրս վերմակ է կարում,
Նրա ասեղն աստառին
Փետուր-բառեր է շարում:
Ծարում է տողը տողին,
Բանվածքներով գաղտնիքի,
Նման արևի շողին,
Ծառագայթին լուսնյակի:
Գույն-գույն շարվածք է հինում
Ասեղ-ասեղ ճերմակին,
Հավքի թևեր են բուսնում
Բըմբլե փափուկ վերմակին:
Այնքան ազատ է կարում,
Այնքան նուրբ ու բնական,
Կարծես թե երգ է գրում՝
Մի հին պատում նախնական:
Ինձ թվում է՝ ծեգի հետ
Դուռը հանկարծ թե բանամ,
Վերմակ-թևեր կթռչեն,
Ամպերի հետ կգնան...




ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

Բուլղարիայի գիտությունների ակադեմիայի գիտնականներն իրենց վերջին տարիների գիտափորձերից այն եզրակացությանն են եկել, որ որևէ արդյունաբերական մեծ շրջանում միջավայրի աղտոտվածության աստիճանը կարելի է որոշել նույնիսկ առանց սանիտարական մարմինների, և դեռ նրանցից էլ ավելի ճշգրիտ, երեք-չորս մեղվաընտանիքի օգնությամբ:

Սանիտարական հսկողության ծառայության համար այնքան էլ հեշտ չէ ամեն օր մեծ տարածություններից օդի, ջրի, հողի նմուշներ վերցնել, իսկ մեղուների համար ոչինչ չարժե օրական միլիոնավոր ծաղիկների ու բույսերի այցելելը: Մեղուներն իրենց փեթակներն են տանում բազմաթիվ վնասակար նյութեր, որ նստում են ծաղիկների ու տերևների վրա: Գիտնականներն էլ, հետազոտելով ծաղկափոշին, որոշում են, թե տվյալ տարածության միավորին ինչքան արդյունաբերական ու կենցաղային թափոններ են ընկնում:

Մեղուների կողմնորոշման մեխանիզմն ուսումնասիրելիս Վրաստանի գիտությունների ակադեմիայի կիբեռնետիկայի ինստիտուտի գիտնականները հանգել են այն եզրակացության, որ մեծ տեղաշարժեր կատարող միջատները կողմնորոշվում են ըստ երկրի մագնիսական դաշտի: Կենսաբաններն էլ պարզել են, որ միջատի մարմնի մեծ առանցքով տեղավորված է վառ արտահայտված մագնիսական երկբևեռ: Այն էլ ասենք, որ մագնիսական հիշողության հատկություններով օժտված են մեծ մասամբ միջատի գլխամասում գտնվող օրգանները:

Փորձերի ժամանակ գիտնականների նկարագրած փաստերից ամենահետաքրքրականը ծաղկի վրա միջատների նստելու պատկերն է: Մեղուները ծաղկի վրա կարող են նստել տարբեր դիրքով, բայց փոշի հավաքելուց առաջ մի պահ քարանում են, ասես մտապահելով կողմնորոշիչները: Եվ ծաղկի վրայից թռչելուց առաջ էլ մեղուն նորից մի թեթև վեր ու վար է անում, որպեսզի կողմնորոշվի տարածության մեջ, և նոր միայն ընտրում է հարկավոր ուղղությունը:

Հենց կողմնորոշվելու համար էլ ժամանակին մեղուներին որպես փոստատար են օգտագործել:

Ֆրանսիայում, առաջին համաշխարհային պատերազմից առաջ, երկու բարեկամ մեղվաբույծներ, որ իրարից հինգ կիլոմետր հեռու էին ապրում, մեղուներ են փոխանակում, հետո մեղուները երկար պահում են փակի տակ ու վրաները թղթեր կպցնելով՝ բաց թողնում: Մեղուները թռչում են ուղիղ իրենց փեթակները:

Բոլորը խոսում են այդ մասին, դրանով հետաքրքրվում է անգամ գերմանական հետախուզությունը: Սկսում են գերմանական սահմանի մոտ գտնվող փեթակներից ֆրանսիականի հետ փոխանակել: Երբ սկսվում է առաջին համաշխարհային պատերազմը, և ֆրանսիացիներն էլ իրենց զորքերը սկսում են սահմանի մոտակայքում կուտակել, գերմանական հետախուզությունը մեղուներն օգտագործում է... հակառակորդի ուժերի մասին տեղեկություններ ստանալու համար: Որպեսզի ֆրանսիացիները գլխի չընկնեն, ֆրանսիական կողմի գերմանացիները մեղուների մեջքին բրդե գույնզգույն թելեր են կպցնում: Ամեն մի գույնը մի բան է նշանակում. կարմիրը՝ հետևազոր, կապույտը՝ հեծելազոր, դեղինը՝ հրետանի: Այս ձևով նրանք իրենց հրամանատարությանը տեղյակ են պահում ֆրանսիացիների զորքերի մասին:

# Կինոարվեստի ստեղծման պատմությունից

Արվեստի այս ձևի հիմքում ընկած է լուսանկարչությունը: Լուսանկարի առաջին հաջողված փորձը (մոտավորապես 1823 թվականին) պատկանում է ֆրանսիացի գյուտարար Նիսեֆորա Նիեպսին: Նրա ստեղծած նկարահանող սարքը պարզունակ էր. բավական է նշել, որ ապարատի մեջ գտնվող լուսազգայուն թաղանթ ունեցող թիթեղի վրա (այն ժամանակ դեռևս չկային ցելոֆանե կամ ապակե լուսազգայուն թանթիկներ) առարկայի պատկերը նկարվում էր տասնչորս ժամվա ընթացքում: Հետևաբար մարդը Նիեպսի ապարատով նկարվելիս պետք է արևի տակ անշարժ, անգամ առանց աչքերը թարթելու մնար 14 ժամ: Հասկանալի է, որ այս պայմաններում նկարահանել կարելի էր միայն անշարժ բնանկար, առարկա՝ տուն, անտառ, լեռ և այլն: Գիտության և տեխնիկայի արագ զարգացումը նպաստեց լուսանկարչական ապարատի կատարելագործմանը, լուսազգայուն ապակե թանթիկի, թղթի, ավելի ուշ՝ ցելոֆանե ժապավենի ստեղծմանը: Այս ամենի շնորհիվ, աստիճանաբար կրճատվեց նկարահանման ընթացքը՝ չորս, երկու, մեկ ժամ, և, վերջապես, հնարավոր եղավ առարկան նկարել մեկ ակնթարթում: Լայն տարածում գտավ սերիական լուսանկարչությունը, օրինակ՝ ներկայացնում էին փոքրիկ տղայի և թռչնակի բարեկամությունը: Առաջին լուսանկարում տղան փայփայում է թռչնակին, երկրորդում՝ բարձրացնում է վեր, երրորդում՝ թռչնակը պոկվում է պատանու ձեռքից, վեր սլանում, չորրորդում՝ տղան վազում է, վայր է ընկնում և այլն: Լուսանկարված դրվագներն իրար կողքի դասավորելով, ստացվում էր պատում:



Լուի Լյումիեր

1894 թվականին Էդիսոնի ստեղծած ապարատը, որին «կինետեսկոպ» անվանումը տրվեց, կենդանացրեց անշարժ



Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՕՉԼՅԱՆԻ

լուսանկարները: «Կինետեսկոպում տեղադրված ծակենավոր ժապավենը տեղաշարժվում էր մեկ վայրկյանում քառասունութ կադր արագությամբ, առանց դադարի, հետևաբար «կենդանացված» պատկերները երևում էին աղավաղված ու մշուշապատ: Պատկերները ցուցադրըվում էին արկղանման մութ խցիկի մեջ, որն ուներ դիտանցք՝ միայն մեկ հոգու համար:

1895 թվականի դեկտեմբերի 28-ին Փարիզի «Գրան կաֆե»-ի նկուղում կազմակերպվեց առաջին վճարովի կինոցուցադրումը: Այստեղ հավաքվել էին գրականության, գիտության, արվեստի աշխատողներ: Մթությունը ճեղքող էլեկտրական լույսի շողերի տակ էկրանի վըրա երևում են շարժվող մարդիկ, կառք, հեծանվորդներ: Հանդիսատեսները զարմանքով դիտում էին և... հանկարծ կադրի խորքից հայտնվում է շոգեքարշը և սլանում դեպի հանդիսասրահ: Լսվում են ճիչեր, աղմուկ, աղաղակ, մի քանիսը նըկուղիցահաբեկված դուրս են նետվում: Ի՞նչ էր կատարվում: Այսօրվա իմաստով՝ արտակարգ ոչինչ: Մարդիկ առաջին անգամ դիտում էին Լուի Լյումիերի հայտնագործած կինոն, որի ցուցադրումն ընդամենը մեկ րոպե էր:

Լյումիերի ստեղծած ապարատի առավելությունն այն էր, որ ինչպես նկարահանման, այնպես էլ ցուցադրման ժամանակ ժապավենի տեղաշարժը ընդմիջված էր, սովորական աչքի համար անընկատ դադարներով: Շնորհիվ այդ բանի էկրանի վրա պատկերները երևում էին պարզ ու հստակ:

Լյումիերի կինոյի հայտնագործման օրից անցել է ավելի քան իննսուն տասնամյակ: Կատարելագործվել են նկարահանումների տեխնիկական հնարավորությունները, հարստացել՝ ստեղծագործական միջոցները, ստեղծվել են կինոյի տարատեսակները, բայց մինչև այժմ էլ կինեմատոգրաֆիայում բոլոր տիպի ժապավենների վրա պատկերներ նկարահանելու մեթոդը մնում է լյումիերյան:

Լյումիերը կյանքը պատկերել է վավերագրական ճշտությամբ, չկան բեմականացված տեսարաններ, դերասաններ: «Երեխայի նախաճաշը» (1895 թ.) կինոնկարում տեսնում ենք սեղանի շուրջը նստած Լյումիերի ծնողներին՝ փոքրիկ երեխայի հետ ճաշելիս: Հայրը գդալով կերակրում է երեխային, որը ծամածռելով բերանը՝ դառնում է ծիծաղելի, իսկ մայրը թեյնիկից սուրճ է լցնում բաժակի մեջ: Այս փոքրիկ, մեկ րոպե տևողությամբ ժապավենը դարձավ վավերագրական կինոարվեստի հիմնաքարը: Ուշագրավ է նաև «Թրջված ջրվորը» (1895): Բանվորը ռետինե փողրակով ջրում է ծաղկանոցը: Հանկարծ ջուրը կտրվում է. ջրվորից քիչ հեռու մի տղա ոտքը դրել է փողրակի վրա: Բանվորը հետաքրքրությամբ նայում է խողովակի անցքի մեջ: Այդ պահին տղան բարձրացնում է ոտքն, ու ջրի շիթը խփում է ջրվորի դեմքին: Հանկարծակիի եկած ջրվորը մի կողմ է ցատկում: Այս միամիտ ու պարզ վիճակի պատկերումը կարելի է համարել առաջին կոմիկական սյուժեն:

«Լյումիեր» ֆիրման նկարահանեց շուրջ մեկուկես հազար ժապավեն, որոնցից յուրաքանչյուրի տևողությունը չէր անցնում մեկ-երկու րոպեից: Դրանք հասարակ ռեպորտաժներ էին, բեմականացված ոչ բարդ դրվագներ, գրական հանրաճանաչ գործերի հատվածներ կամ սյուժեներ՝ «Ֆաուստը և Մեֆիստոֆելը», «Կապույտ մորուքը», «Մարատի մահը» և այլն:

Հետզհետե կինոն ժամանց-զվարճալիքից վերածվում էր արվեստի:

Ամերիկյան ձեռնարկատերերը կինոստուդիաների կառուցման վայր ընտրեցին Լոս Անջելեսի արվարձանի Հոլիվուդ ավանը, որտեղ եղանակը մեծ մա-

սամբ արևոտ էր, կային լեռներ, անտառներ, ծով ու գետ, շատ էր բանվորական էժան ուժը: Կարճ ժամանակում կառուցվեցին նկարահանման տաղավարներ, լաբորատորիաներ, փորձասենյակներ և այլ օժանդակ շինություններ: Մի քանի տարում Հոլիվուդում ստեղծվեց 50 կինոստուդիա, որտեղ միաժամանակ կարող էր աշխատել 25—30 նկարահանող խումբ՝ մի քանի հազարի հասնող աշխատողներով: Այստեղ, բնության գրկում պատրաստվեցին երկրագնդի տարբեր մայրցամաքներին և գոտիներին համապատասխան բնապատկերներ: Այնպես, որ տեղում հնարավոր դարձավ նկարահանել և՛ տունդրա, և՛ ամայի տափաստան, և՛ անապատ, և՛ սաղարթախիտ ջունգլի, և՛ լեռներ, և՛ ալեկոծված ծով: 1913-ին կառույցների թիվը այնքան ավելացավ, որ Հոլիվուդ ավանն արդեն դարձավ կինոքաղաք և դեպի իրեն ձգեց ամերիկյան ու եվրոպական շատ արվեստագետների: Քանի որ սկզբնական շրջանում չափազանց քիչ էին էլեկտրական լուսարձակները, նկարահանումներ մեծ մասամբ կատարում էին բնության գրկում՝ արևոտ եղանակներին:

Եթե Լուի Լյումիերը համարվում է կինոնկարահանող ապարատի ստեղծողը և վավերագրական կինոյի հիմնադիրը, ապա նրա հայրենակից Ժորժ Մելեսը դարձավ առաջին գեղարվեստական կինոյի ստեղծողը: Մելեսը, կառուցելով առաջին կինոտաղավարները, ուր դրվում էին դեկորները՝ խրճիթ, պալատ, ամրոց, նկուղ, քարանձավ և այլն, ստեղծեց «Ստարֆիլմ» կինոֆիրման: Նա վարպետորեն էր օգտագործում արեգակի լույսը, որը թափանցում էր ապակեպատ կինոտաղավարը, որտեղ կառուցված էին դեկորները: Զանազան թափանցիկ, կիսաթափանց ցանցերի, լուսազտիչների (ֆիլտրերի) շղարշների օգնությամբ օբյեկտը լուսավորելով՝ նա հասնում էր մեծ տպավորության: Մելեսը կինո բերեց թատերական արվեստի շատ միջոցներ, գրիմ, զգեստներ, հատուկ մեխանիզմներ: Նա այս ամենը ոչ թե մեխանիկորեն էր ընդօրինակում, այլ կինոյի արտահայտչամիջոցներն ու լեզուն հարստացնելով ստեղծում էր մի նոր որակ: Լյումիերյան վավերագրական կինոն բարձրացնելով մի նոր աստիճանի՝ Մելեսը ձեռնամուխ եղավ գեղարվեստական կինոնկարների ստեղծման աշխատանքներին: Դրանք հիմնականում ֆիլմ-ներկայացումներ էին: Մելեսի աչքի ընկնող ժապավեններից են «Մոխրոտը», «Կարմիր գլխարկը», «Ռոբինզոն Կրուզո», «Եղնիկն անտառում», «Նվաճված բևեռում»: Այնուհետև նա նկարեց օպերաներ՝ «Ֆաուստ», «Սևիլյան սափրիչ» և այլն: Մելեսը իր նկարած գրեթե բոլոր ժապավենները վրձնով ներկում էր՝ ստեղծելով արհեստական գունավոր ֆիլմեր: Առաջին անգամ կոմբինացված նկարահանումներ Մելեսը կատարեց: Դա ավելի ընդլայնեց կինոյի հնարավորությունները: Հետաքրքիրն այն է, որ առաջին կոմբինացված կադրը Մելեսը ստացավ պատահաբար: Նա մի անգամ նկարահանեց փողոցով շարժվող օմնիբուսը: Ժապավենի վերամշակումից՝ հայտածելուց և տպելուց հետո օպերատորը զարմանքից քար կտրեց. օմնիբուսը էկրանին հրաշքով վեր էր ածվում... դիակառքի: Այս ի՞նչ հանելուկ էր, չէ՞ որ ինքը նման բան չէր նկարել: Իսկ ի՞նչ էր տեղի ունեցել: Փողոցով ընթացող օմնիբուսը նկարահանելու ժամանակ ապարատի մեջ պտտվող ժապավենը մի պահ կանգ էր առել: Օմնիբուսը շարժվել, դուրս է եկել կադրից, նրա տեղը հայտնըվել է դիակառքը: Այս պատահականությունն էլ Մելեսին հուշում է ստեղծել մի նոր կոմբինացված նկարահանման ձև: Օգտագործելով այն, Մելեսը նկարեց մի շարք ֆանտաստիկ, առեղծվածային ֆիլմեր:

1902 թվականին մակետների օգնությամբ Մելեսը նկարահանեց «Մոնբլանի ժայթքումը», որը ունեցավ մեծ հաջողություն՝ Մելեսին բերելով հսկայական եկամուտ: Նա իր նկարահանած հատկապես հեքիաթ ու ֆանտաստիկ ֆիլմերում կոմբինացված նկարահանումները զուգորդելով ճարպիկ ու համարձակ տրյուկներին, ստեղծում էր հետաքրքիր, զարմանահրաշ առեղծված, կախարդանք, հանելուկ: Ժամանակին լայն ընդունելության արժանացան «Մեֆիստոֆելի լաբորատորիան», «Անիծված քարանձավը», «Կախարդական պանդոկ», «Ջրի վրայով քայլող Քրիստոսը» ֆիլմերը, որոնց ժապավենների երկարությունը չէր անցնում հարյուր մետրից: Անասելի մեծ էր Մելեսի «Ճանապարհորդություն դեպի լուսին» ֆիլմի հաջողությունը: Սակայն այս հաջողությունից հինգ տարի անց, Մելեսին մեծ դժբախտություն է պատահում: Լաստանավ վարձելով, դերասանների հետ օպերատորը մեկնում է Խաղաղ օվկիանոս՝ կինոնկարահանման

Երբ արդեն ավարտվում են նկարահանումները, պարզվում է, որ նկարահանված հսկայական քանակության ժապավենները խոնավությունից բորբոսնել, շարքից դուրս են եկել: Դա վերջնականապես սնանկացնում է մինչև այդ էլ ֆինանսական դժվարին կացության մեջ ընկած Մելեսին: Վաճառելով իր ֆիլմերի նեգատիվները, մի կերպ ազատվում է դատից: Մելեսը մեռնում է 1938 թվականին, աղքատության մեջ, Փարիզի ծերանոցներից մեկում, ուր ապաստան էին գտնում խնամքից զուրկ տարեց մարդիկ:

Չորս ամիս էլ դեռ չէր անցել Լյումիերի կինոհայտնագործումից, երբ տարբեր երկրներում գիտնականները ստեղծեցին իրենց կինոնկարահանող, տպագրող և ցուցադրող ապարատները:

Արվեստի նորահայտ ձևն իր շահութաբերությամբ գրգռեց ամերիկյան բանկիրների ախորժակը: Նրանք կինոարդյունաբերողներին տրամադրում էին խոշոր գումարներ, որը նրանց մեծ շահույթ էր բերում: Կինոնկարահանող խմբերի աշխատանքը ԱՄՆ-ում, ինչպես մյուս կապիտալիստական երկրներում, մեծ մասամբ կազմակերպում էին պրոդյուսերները, որոնք և համարվում էին ֆիլմի տերն ու տնօրենը: Պրոդյուսերները պայմանագրային կարգով վճարում էին սցենարիստին, ռեժիսորին, դերասանին և մյուս աշխատակիցներին, ընտիպում կարճ ժամանակամիջոցում ընտեղծել հանդիսատեսի հետաքրքրությունը շարժող զարմանք կամ զվարճանք պատճառող թեկուզ ոչ խոր բովանդակությամբ, գաղափարազուրկ, բայց շահութաբեր ֆիլմեր: Պրոդյուսերներից շատերը գրականություն, արվեստ չհասկացող մարդիկ էին և երբեմն այնպիսի «շտկումներ» էին կատարում, որ բոլորովին չէր բխում սցենարի կամ կինոնկարի բովանդակությունից: Լինում էին և «անկախ» պրոդյուսերներ, որոնք հավաքագրում էին երկար տարիների փորձ ու հմտություն ունեցող դերասաններին, ռեժիսորներին և նկարահանում հետաքրքիր գաղափարական ու գեղարվեստական լիարժեք ֆիլմեր:

Այսպես, տասնիններորդ դարի վերջին տարիներին, հազարամյա փորձ ու ավանդույթ ունեցող արվեստների շարքում հայտնվեց կինոն, արագությամբ տարածվեց հողագնդի բոլոր մայրցամաքներում:

**ԳԼԱՍԵՈՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**




Ինչպես կշփոթվեիք, եթե ամանորի նախաշեմին մեկը մոտենար ու ցողեր ձեզ ջրով կամ թեկուզ զաֆրանով: Այո, իսկ եթե նույն կերպ վարվեն բիրմացու հետ, նա միայն կուրախանա, Բիրմայում կամ Տաիլանդում, ուր ընդունված է այս սովորույթը, նոր տարին դիմավորում են տարվա ամենաշոգ շրջանում՝ ապրիլ ամսին: Հավանաբար, բնության զարթոնքով հմայված, շատ ժողովուրդներ այն նշել են վաղ գարնանը: Այդպես էր ընդունված նաև Եվրոպայում մինչև XVI—XVII դարերը, ավելի ուշ Նոր տարին այնտեղ սկսեցին նշել հունվարի 1-ին: Այնպես որ, տաիլանդցիների սովորույթը բնական է ու հիմնավորված, երբ Նոր տարին կամ ինչպես իրենք են անվանում՝ «ջրի տոնը» նշում են ապրիլին: Այդ օրերին այնտեղ կազմակերպվում են նաև զավեշտական ջրային «ճակատամարտեր», իսկ կառնավալային շքերթին հետևող սայլակառքերն ու նավակները մեկընդմեջ վերափոխում են շարժական ծաղկաթըմբերի: Առհասարակ ընդունված է տոների բարի գործեր անել. տղաներն այդ օրը բացում են թռչնավանդակների դըռնակները, իսկ աղջիկները հագնում են ամենագեղեցիկ զգեստերն ու գետն են գցում իրենց ձկները:

Վիետնամում ամանորը նույնպես դիմավորում են գարնանը և այն անվանում են «Տետ»: Այդ օրերին քաղաքներում ու

գյուղերում փթթում են ծաղկի տոնական շուկաները. աղջիկները մրցում են՝ ով իր փունջն ավելի գեղեցիկ կձևավորի: Ավանդական սովորույթներին ավելացել է նորը՝ ջահելներն այդ օրը ծառատունկ են անում: Կեսգիշերին սկսվում է հրավառությունը, ճայթում-պայթում են հազարագույն շրխկանները, տոնախմբությունը տևում է մինչև լուսաբաց:



Ըստ ճապոնացիների ավանդության, երեխայի ցանկացած երազանքը կկատարվի, եթե նա գիշերը բարձի տակ դնի սեփական իղձերի նկարազարդված պատկերը: Այդ իսկ պատճառով նախատոնական օրերին բոլոր փոքրիկ ճապոնացիները նկարելով են զբաղվում: Այնուհետև, Նոր տարվա առաջին լուսաբացը նրանք դիմավորում են մեծերի հետ, որից հետո ամբողջ ընտանիքով նստում են սեղանի մոտ և ուտում բրնձաբլիթներ՝ որպես առատության, բարակ-երկար առիշտաներ՝ երկար տարիների բախտավորության, և ոլոռից կերակուր՝ առողջության խորհրդանիշ: Տներին տղաները նախշազարդում են օդապարիկները հեքիաթի գազանների երևակայական պատկերներով: Աղջիկները դաշտերից հավաքում են «յոթ տեսակ բանջար»՝ բողկ, նեխուր, եղինջ, շաղգամ և այլն: Նոր տարվա յոթերորդ օրը եփում են հավաքած բանջարն ու մատուցում նախաճաշին:

Պատանի չինացիները Նոր տարին դիմավորում են «խաղաղության թմբկահարությամբ» (թմբուկը նման է թենիսի երկաթե թիակի): Անցկացվում է «Լապտերների» ավանդական տոնահանդես: Բոլորն իրենց տների ճակատին կախում են ամենաանհավատալի գույներ շողարձակող լապտերներ:

Հնդկաստանի որոշ շրջաններում Նոր տարին նույնպես գարնանն են նշում: Ջահելները զինվում են զաֆրանով կամ կարմազինի վարդագույն ջրով լիցքավորված ատրճանակներով և ցողում են իրար՝ այդ ամենն ուղեկցելով ամանորյա շնորհավորանքներով և կատակ-մաղթանքներով (իբր՝ հարկավոր է կամաց-կամաց վարժվել անձրևային սեզոնին): Հնդկաստանում այդ օրերին սիրում են անցկացնել զանազան մարզախաղեր, նետաձգություն, ժողովրդական թատրոնը ցուցադրում է իր ներկայացումները:

Իսկ մեր հարևանները՝ աֆղանները, պարսիկները, Նոր տարին դիմավորում են մարտին և այն անվանում են «Նովրուզ», այսինքն՝ «Նոր օր»: Երեխաները նախապես են պատրաստվում. կավե ամանի թաց հողի մեջ գցում են արագ աճող բույսերի՝ ցորենի, նեխուրի, ոսպի սերմեր:

Աֆրիկյան մայրցամաքում Նոր տարին դիմավորում են չորային սեզոնի վերջում: Սյերա-Լեոնեում այդ օրը երեխաները պարում են ֆլեյտայի և թմբուկների երաժշտության տակ, իսկ Եգիպտոսում Նոր տարին բերքահավաքի ավարտին են տոնում՝ սեպտեմբերին: Իսկ ահա թե ինչ է տեղի ունենում Հարավային Աֆրիկայում ամանորի նախօրեին: Օրինակ՝ Էկվադորում փնտրում հանում են իրենց ամենահնամաշ հագուստները՝ տաբատ, կոշիկ, բաճկոն: Դրանց մեջ ծղոտ են խցկում ու սարքում խրտվիլակ, որին նրա-



տեցնում են տան առջև, աթոռին, «բերանին» դնում են ծխամորճ, ձեռքին՝ ձեռնափայտ և այսպիսով մեր առջև հին տարին է: Երեխաները շուրջպար են բըռնում, իսկ այդ ժամանակ տան անդամներից մեկը գրում է հին տարվա «կըտակը», որտեղ մեկ առ մեկ թվարկվում են ընտանիքի անախորժությունները, որոնցից պետք է ազատվել:

Կեսգիշերին «կտակը» հանդիսավոր կարդում են, հետո այն դնում են խրտվիլակի ծոցը և այրում չորս կողմից: Այսպիսով, հին տարին հավետ ուղևորվում է դեպի անցյալ, իր հետ տանելով նաև ընտանիքի բոլոր անհաջողությունները:

Իսկ ահա, մեքսիկացիները սիրում են այսպիսի խաղ՝ կավե ամանը, որը լցված է ամենատարբեր քաղցրավենիքներով (այն անվանում են «պինատա»), կախում են օրորվող պարանից: Հյուրերը կապած աչքերով աշխատում են փայտի օգնությամբ ջարդել պինատան: Ում հաջողվի, նշանակում է բախտավոր կլինի Նոր տարում:



Նկարները՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՑՕՂԼՅԱՆԻ

Եվրոպական համարյա բոլոր ընտանիքները Նոր տարուն տոնածառ են զարդարում, իսկ երեխաները սպասում են Ձմեռ պապին՝ (կամ Սանտա Կլաուսին) իր նվերներով: Ի դեպ, դեռ ոչ վաղ անցյալում, դեռ 19-րդ դարի սկզբում, Ձմեռ պապն ընդունվում էր որպես տոնածառի հանդեսի սառնաշունչ և օտար ուժեր մարմնավորող կերպար: Եվ միայն 20-րդ դարի սկզբին Ձմեռ պապը կարողացավ վերջնականապես հաղթահարել այդ սովորույթն ու հաստատել իրեն որպես երեխաներին նվեր բերող բարի պապիկ:

Իսկ իտալացի երեխաները դեռ շարունակում են նվերներ ստանալ զառամած փերի Բեֆանից: Նրանք իրենց մաշիկները քնելուց դնում են տոնածառի տակ: Փոքրիկ անգլիացիները այդ նպատակով իրենց գուլպաները հարմարեցնում, կախում են օջախի վրա:

Գերմանացիների ու անգլիացիների մոտ երջանկության նշան է գիշերային հանդիպումը ծխնելույզ մաքրողի հետ: Այնպես որ, հենց նա երևում է փողոցում, իսկույն բոլորն շտապում են քսվել նրա շորերին ու մրոտվել:

Իսկ որոշ ընտանիքներ, հետևելով հին գերմանական ավանդույթին, ահա թե ինչ են անում: Նախքան ժամացույցի սըլաքների համընկնելը, բոլորը հավաքվում են սեղանի շուրջը: Եվ ահա ժամացույցի 12 զարկերի տակ, 12 անգամ վեր են թռչում, որն արժե անվանել աստղագիտական թռիչք՝ ուրախության ճիչերով և փոխադարձ շնորհավորանքներով:

Սկանդինավյան երկրներում հունվարի 2-ը պապիկների ու տատիկների օրն է: Այդ օրը նրանք պատմում են զանազան լեգենդներ ու կախարդական զարմանալի պատմություններ: Սովորաբար այդ օրը երեխաներն իրենց շատ բարեկիրթ են պահում: Հոլանդիայում, օրինակ, իրենց ամանորի մաղթանքները նախապես գրում են թղթե զարդանախշ ծաղկաշղթաներով երիզված էջի վրա և այն միայն այդ օրը կարդում: Իսկ Դանիայում ու Շվեդիայում այսպես է. տեղի սովորույթով, երեխաները տան հին ափսեները խփում են իրենց ծանոթների դռներին և ընդհանրապես մեծ աղմուկ են ստեղծում:

Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Բուլղարիայում և Հունգարիայում երեխաները սրտանց ուրախանում են անտառային թարմություն բուրող և լուսաշըղթաների շողարձակումից փայլող տոնածառի շուրջը, ուր կազմակերպվում են խաղ-շուրջպարեր, վիկտորինաներ, բաժանվում են նվերներ և շնորհվում մըրցանակներ: Լուսավոր այս տոնի հրաշալի տպավորությունը պահպանվում է ողջ տարին:

Դուք նույնպես պատրաստվում եք դիմավորել այդ ամենահեքիաթային տոնը ձեր հարազատների և ընկերների հետ: Թող այն ուղեկցվի խաղերով, կատակներով, երգ ու պարով, ինչքան հնարավոր է՝ հետաքրքիր ու զվարճալի:



ՄԻՆԱՍ ԱՎԵՏԻՍՅԱՆ. «ԲԱՑ ՊԱՏՈՒՀԱՆ» «ՇԵՄԻՆ»,

Գլխավոր խմբագիր՝ **ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.։

**ԻՆԴԵՔՍ՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.**